# ՊԻՈՆԵՐ



ՕԳՆԻՐ
ՊԱՅՔԱՐՈՂ
ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻՆ,
ԱՆԴԱՄԱԳՐՎԻՐ
ՄՕՊՐ-ԻՆ

ՄԱՐՏ
№ 1
1927

## ՄԵՐ ՀԵՐԹԱԿԱՆ ԱՆԵԼԻՔՆԵՐԻՑ ՄԵԿԸ

### ՊԱՅՔԱՐԵՆՔ ՄԵՐ ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ ՆԿԱՏՎՈՂ ԹՐԵՎՈՒՄՆԵՐԻ ՈՒ ԲԱՑԱԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՄ

Մեր դպրոցներում, հաճախ նըկատվում է, որ աշակերտներից շատերը, թե դասի ժամանակ և թե ընդմիջումներին չեն լսում ուսուցչին, աղմկում, բարձրանում են նստարանների վրա, խզմզում պատերը։

Յեվ, յեթե դրան ավելացնենք, վոր հաճախ բացակայում են դասերից, այս ու այն կողմ աննպատակ կերպով թրեվ գալիս՝ պատկերը լրիվ կլինի։ Պետք է ասել, վոր յերբեմն առանձին պիոներներն իրենք են անկարգապահություն մտցնում դպրոցում և այդպիսով գցում են պիոներների հեղինակությունն անկազմակերպ պատանիների առաջ, կամ հանդեպ այդ բոլորի անտարբեր վերաբերմունք ցույց տալիս։ Պիոներները ամբողջ աշակերտության և ուսուցչի հետ միասին պիտի պայքարեն այդ յերևույթների վերացման համար։

Հարկավոր է դպրոցական խորհրդի և ուսուցչի հետ միասին հավաքել աշակերտներին, բացատրել նրանց, թե բացակայությունները ու թրեվումները ինչպիսի վնասներ են հասցնում խորհրդային դպրոցին և ամբողջ աշակերտությանը։ Այդ զրույցից հետո հարկավոր է դիմել գործնական քայլերի։ Աշխատանքի ընթացքում չպետք է մոռանալ, վոր աշակերտներից վոմանք դպրոց չեն գալիս դասագրքեր, գրենական պիտույքներ չունենալու պատճառով։ Անհրաժեշտ է պարզել այդպիսիների թիվը, կազմակերպել կարիքավոր աշակերտությանն ոգնելու գործը։

Պետք է այնպես անել, վոր ծընողները նույնպես ոգնության գան կարիքավոր աշակերտներին։ Դրա համար հարկավոր է գումարել ծընողական ժողով այդ և ընդհանրապես բացակայությունների խնդիրը պարզելու համար։

Մյուս կողմից անհրաժեշտ է դասարանական կազմակերպիչների միջոցով կանոնավորել աշակերտության հաճախումների հաշվառումը։ Յեվ ամեն ամիս կազմել հաճախման ու բացակայությունների դիագրամաներ։

Պիոներական ողակները պիտի առանձնապես հետեվեն, թե ինչպես են սովորում պիոներները դպրոցում, պիտի լավ իմանան նրանց վարքն ու բարքը։ Դրա համար ողակից մեկին հանձնարարում են, վոր նա հետևի թե ողակի պիոներները ինչպես են սովորում ու պահում իրենց, դասերից ինչքան են բացակայում։ Մյուս կողմից ֆորպոստը իր ժամանակին պիտի տեղեկություններ տա կոլեկտիվին այս կամ այն պիոների վերաբերյալ։ Իսկ այդ այն ժամանակ ֆորպոստը կարող է անել, յերբ պահի առանձին հուշատետր դպրոցում սովորող պիոներների վարքի համար։

Կոլեկտիվներն իրենց աշխատանքի ընթացքում պիտի պայքարեն պիոներների վորոշ մասի անտարբեր վերաբերմունքի դեմ դեպի դպրոցական աշխատանքները։ Բոլոր պիոներները լավ պիտի իմանան, վոր իրենք ակտիվ կերպով պիտի մասնակցեն դպրոցական աշխատանքներին ու կյանքին, և վոչ թե պիտի քաշվել մի կողմ ու հեռվից դիտել թե ինչ է կատարվում դպրոցում։

Առաջիկայում, յուրաքանչյուր պիոների առաջ խնդիր է դրվում իր ամենօրյա աշխատանքների ընթացքում ուսումնասիրել ու ծանոթանալ իր դպրոցական ընկերների կյանքին ու կենցաղին։ Այդ կոգնի նրան ավելի հեշտությամբ վերացնել մեր դպրոցներում նկատվող բացասական յերևույթները։

Պիոներն որինակ է բոլոր պատանիների համար։

Ձեռնամուխ լինենք այդ ընկերներ։ Կազմակերպված կերպով, ամբողջ աշակերտության հետ և ուսուցչության ոգնությամբ վերացնենք մեր դպրոցներում նկատվող թրեվումներն ու բացակայությունները։

**Արմ. Շեկոյան**

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԳԻԱ՝ Դարազյան Ն., Դավթյան Ս., Յենգիբարյան Մ., Հարությունյան Գ., Հովհաննիսյան Հ., Միրզայան Հ., Սիմակ

Պատասխանատու խմբագիր՝ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Գրառեպվար № 88բ.

Պետհրատի յերկրորդ տպարան Յերևանում—253



ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ։

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՈՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն—Յերեվան, Ռուբենի № 2

№ 1 ՄԱՐՏ 1927 Թ.

Պ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ՀԱՇՎԻ ԱՌՆԵՆՔ ԿԱՏԱՐՎԱԾ ԱՇԽԱՏԱՆՔԸ

*Պիոներներ, ձմեռն անցավ, հարկավոր ե, վոր մենք հիմիկվանից հաշվի առնենք այն բոլոր աշխատանքները, վոր կատարել են ձմեռվա ընթացքում ամեն մի ողակ, կոլլեկտիվ և առանձին պիոներները։*

*Իսկ մենք քիչ բան չենք արել, աշխատել ենք դպրոցում, փորպոստում, խրճիթ-ընթերցարանում. ոգնել ենք Լենինական աղետյալներին, կուսակցական և կոմյերիտական բջիջների աշխատանքներին, տարել ենք գյուղատնտեսական աշխատանք, կազմակերպել ենք յերեկույթներ ու խաղեր, լույս ենք ընծայել պատի լրագիր...*



*Այս աշխատանքների ընթացքում մենք անկասկած նվաճումներ ունեցել ենք։ Սակայն, դրա հետ միասին շատ սխալներ արած կլինենք. ունեցել ենք նաև թերություններ ու բացեր։*

*Հարկավո՞ր ե արդյոք հաշվի առնել այդ բոլոր թե վոչ, ինարկե հարկավոր ե։*

### ԻՆՉՈ՞Ւ

*Ամենից առաջ նրա համար, վորպեսզի այն սխալները, վոր կատարել ենք գարնանն ու ամրանն, այլևս չկրկնենք, այն բացերն ու դժվարությունները, վոր ունեցել ենք՝ աշխատենք վերացնել։*

*Բացի այդ, չե՞ վոր մենք հաշվի առնելով ձմեռային աշխատանքները, կկարողանանք ամփոփ կերպով ծանոթացնել կոմունիստ և կոմյերիտական ընկերներին, մեր ծնողներին ու անկազմակերպ պատանիներին մեր կատարած աշխատանքների հետ։*

### ԻՆՉՊԵ՞Ս ԱՆԵԼ ԱՅԴ

*Հարկավոր ե հավաքել հուշատետրերը, պատի լրագրները, պատրաստած զանազան մոդելները և կազմակերպել ցուցահանդես։*

*Այդ ցուցահանդեսին, անհրաժեշտ ե նույնպես պատրաստել դիագրամա՝ կոլլեկտիվի աճման ու կազմի վերաբերյալ։*

*Բացի ցուցահանդեսից, շատ լավ կլինի նաև կազմակերպել հաշվետու յերեկույթ։ Այդ յերեկույթին պետք կանչել կոմունիստ ու կոմյերիտական ընկերներին, ծնողներին ու անկազմակերպ պատանիներին։ Հարկավոր ե պատմել նրանց՝ կոլլեկտիվի կատարած աշխատանքի մասին։*

*Այդ ուղղությամբ շատ բան կարելի յե անել, միայն հարկավոր ե, վոր դուք մի լավ մտածեք և գործի կպչեք։*

*Այդ բոլորից հետո, մենք պետք անցնենք մեր գարնանային ու ամառային աշխատանքների կազմակերպմանը։*

### ՄԻՇՏ ԱՌՈՂՋ

*Գարնան և ամառվա ընթացքում, մենք պետք ե աշխատենք ամեն կերպ ամրապնդել, առողջացնել մեր մարմինը. հարկավոր ե ինչքան կարելի յե շատ ոդ-*

տվել մաքուր օդից, ջրից. (շփումներ անել, լողանալ գետում) և արևից (արևի վաննաներ)։ Դրանք մեր ամենամոտիկ բարեկամներն են, դրանց օգնությամբ հեշտությամբ կարող ենք կռվել հիվանդությունների ու վնասակար բացիլների դեմ, դրանց շնորհիվ մեր մարմինը կդառնա ամուր և առողջ. իսկ լավ պիոներ, լավ փոխարինող կարող ես լինել այն ժամանակ, երբ լինես առողջ։ Եթե թույլ լեղար, տկար, գունատված, դու շատ շուտ կհոգնես աշխատանքներից։ Բայց չէ՞ որ դու մեծ աշխատանք՝ մեծ պարտականություններ ունես։ Բանվոր դասակարգի գործի համար պայքարողը պետք է առողջ և տոկուն լինի, որպեսզի առանց հոգնելու կարողանա պայքարել մինչև վերջը։

## ՄՅՈՒՍ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

Առողջացման հետ միասին, մեր առաջ շատ ու շատ խնդիրներ են կանգնում։ Այն, որը դժվար եր անել ձմռանը, գարնան և ամառվա ամիսներին կարելի յե հեշտությամբ անել։

Հարկավոր է մեծ տեղ տալ գյուղատնտեսական և շեֆ աշխատանքներին, եքսկուրսիաների, զբոսանքների և մասսայական հեղափոխական խաղերի կազմակերպմանը, Անհրաժեշտ է մտածել լագեր գնալու մասին։

Գարնանը, մեծ հնարավորություններ են ստեղծվում կապվելու անկազմակերպ պատանիներին և բատրակներին համախմբել նրանց մեր շուրջը։

Այս և ուրիշ շատ հետաքրքիր աշխատանքներ կարող ենք կազմակերպել, միայն հարկավոր է պատրաստվել հենց հիմիկվանից։

## ԲՈԼՈՐՍ ՄԻԱՍԻՆ

Ցերեվի կգտնվեն պիոներներ, վորոնք կմտածեն.

— Լավ, ես բոլորը մե՞զ ինչ, եդ կոլվաըի գործն է, թող նա այս բոլորը լավ իմանա և անցկացնի կոլլեկտիվում։

Այդպիսիներին մենք կպատասխանենք այսպես.

— Կոլվարը՝ կոլվար, բայց նա առանց պիոներների ակտիվ մասնակցությանը վոչինչ չի կարող անել։

Յուրաքանչյուր պիոներ պիտի լավ հիշի, որ պիոներական կազմակերպությունը՝ դա իրենց պատանեկության կազմակերպությունն է, և պիոներներն իրենք պետք է սովորեն կազմակերպել իրենց կյանքը, պայքարն ու աշխատանքը։ Պիոներներն իրենք պիտի աշխատեն թարմացնել իրենց կոլլեկտիվի աշխատանքները, գրավչություն, աշխուժություն մտցնեն այդ աշխատանքների մեջ։

Իսկ կոլվարը մեր մեծ յեղբայրն է, նա պետք է օգնի մեզ, մեզ հետ միասին կազմակերպի մեր կյանքն ու կոմունիստական դաստիարակության գործը։

Պիոներներ, բոլորս մեկտեղ լծվենք աշխատանքի։

---

ԱՍՈՒՐ ՎԸՆԿԱՌՆ

## ՊԱՏԱՆԻ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԸ

Մեր մեծ Ուսուցիչ Վարպետը,
Սերունդներ է կապել իր գործին,
Մենք նրա պատանի աշակերտներն ենք,
Անցել ենք յեռանդուն գործի։

Դպրոցում—լույսի այդ հնոցում,
Մեր միտքը վառում ենք գիտությամբ,
Ցեվ կյանքի հարազատ ծոցում՝
Լցնում ենք մեր սիրտը խնդությամբ։

Ուսուցիչ Վարպետն այն մեր մեծ,
Թողել է մեզ մի սուրբ պատգամ,
—«Պատանի սերունդը պիտի
Կառուցի լուսավոր ապագան»։

Հիմա, մենք պիոներներ պիտանի,
Վարպետի ցուցմունքով ենք գործում,
Տեսե՛ք, վաղը պատրաստ կը լինի
Նոր Շենքը, վոր մենք ենք կառուցում։

Ուսուցիչ Վարպետն այն մեր մեծ,
Վախճանվել է, հիմի էլ չկա,
Բայց նրա պանծալի գործը
Տանում ենք ինքներս անհա։

Ա. ԱԶՆԱՎՈՒՐՅԱՆ

# ԼՈՒՍԻԿԸ «ՄՈՊՐ»-ԻՆ ԱՆԴԱՄԱԳՐՎԵՑ

Վերջին ժամն եր։ Յերրորդ խմբի աշակերտ—աշակերտուհիները, բրբջալով, ուրախ զվարթ դասարան մտան, սպասելով հայոց լեզվի դասատուին։

Ցեկավ ուսուցիչը յեվ հայտնեց, վոր այդ օրը կարդալու յե մի հոդված, վորտեղ ցույց ե տրվում թե բուրժուական յերկրներում հեղափոխական բանվորները վոնց են տանջանքի յենթարկվում։ Ու նախքան նյութին անցնելը՝ սկսեց այդ յերկրների կարգերը նկարագրել։

Աշակերտներն ելեկտրականացան։

— **Մոպր, Մոպր**... շշնջացին մի քանիսը...

Լուռ, տարված լսում են բոլորն էլ։ Պատմվածքի ընթացքում, նրանց դեմքերը մերթ զարմանք են արտահայտում, ապա արհամարանք, վրեժ ու բողոք։

Պիոներ Լուսիկը, վորը դասարանի ամենափոքրիկն եր, ընկած գրասեղանին, գլուխը թևերին դրած, այնչափ եր տարվել, վոր ինքն ել չիմացավ, թե ինչպես կամաց-կամաց աչքերն սկսեցին փակվել ու կարծես թե քնեց։

Ահա ուսուցիչը նկարագրում ե բանվորների ծանր դրությունը. ապա բանտը, բանտի դաժան ծառայողների վատ վերաբերմունքը։ Այս բոլորը կարծես Լուսիկը լսում եր ու տարվում ուսուցչի պատմածով։

Զգում եր, վոր ինքն ընկել ե մի անծանոթ, հեռո՜ւ, հեռո՜ւ յերկիր։ Ահա փողոցով անց են կացնում բանտարկյալներին, ձեռքերն յետեվներին կապած։ Ինքն ել ե ընկնում նրանց յետեվից ու գնում։ Ահա բանտի հաստ ու սարսուռ ազդող պատերը, մեծ ու հաստ յերկաթյա դուռը ճռնչալով բացվում ե, ներս են տանում բանտարկյալներին, ինքն ել աննկատելիորեն ներս ե մտնում, ապա մի ուրիշ հաստ յերկաթյա դուռ, սա յել ե բացվում, նորից մի ուրիշը, յեվ վերջապես Լուսիկն ինքն իրեն գտնում ե բակում, չորս բոլորը բարձր-բարձր պարիսպանման պատեր, յերկաթապատ դռներով։

Մի քանի քայլ առաջ անցնելով, բացվում ե մի



Միջանցքում յերթեվեկում եր հերթապահը

փոքրիկ դուռ։ Բանտարկյալները ներս են մտնում, նույնն ե անում յեվ Լուսիկը, բայց այստեղ նա այլևս առաջ չի գնում, թագնվում դռան արանքում։



Լուսիկի առաջ բացվեց մի մութ, տխրություն բերող միջանցք, պատերի վրա փոքրիկ, փոքրիկ դռնակներ։ Միջանցքում, մի ծայրից մյուսն յերթեվեկում եր մեծ մարմնով, խոժոռ ու կիտած հոնքերով, յերկար ու թավ բեխերով մի մարդ—հերթապահը։ Նրա կոշտ կոշիկներից բարձրացող ձայնը խանգարում եր տիրող լռությունը։

Լուսիկը վախ զգաց, ուզեց փախչել. բայց չե՛, մի փոքր էլ սպասեց։ Թե գիշերը հանդիպելիս լիներ նրան՝ սիրտը կճաքեր։ Լուսիկի աչքին ընկավ հերթապահի գոտուց կախված մեծ բանալին։

— Ախ, ի՞նչ լավ կլիներ, յեթե այդ բանալին իր ձեռքն ընկներ, ու հենց այդ մտածմունքի մեջ եր, վոր հերթապահի գոտին քանդվեց յեվ բանալին ներքեվ ընկավ։ Կոշիկների թրախկ-թրախկը խանգարեց ընկնող բանալիի զրնգուն ձայնը յեվ հերթապահը չլսեց։ Լուսիկն արագությամբ դուրս թռավ իր թաքստոցից, վերցրեց բանալին, ու մինչ պահակը մեջքն Լուսիկին դարձրած գնում եր, զգուշությամբ բաց արեց հենց առաջին դուռը, ներս մտավ ու հետեվից նորից փակեց։

Յերկար մորուքով, դեղնած ու տխուր դեմքով մի բանտարկյալ, նստած, թիկն տված սեղանին՝ լուռ կարդում եր։

Բանտարկյալը տեսնելով Լուսիկին վեր թռավ, գրկեց, ծնկներին դրեց ու սկսեց պինդ-պինդ համբուրել։

Լուսիկը պատմեց թե ինքն ինչպես այստեղ մտավ ու սկսեց հարցեր տալ։

— Ինչո՞ւ յեն քեզ այստեղ նստեցրել։

Բանտարկյալը ծիծաղեց։

— Ի՞նձ։

— Այո՛։

— Նրա համար՝ վոր բանվոր եմ։

— Մի՞թե ձեզանում բանվորներին բանտ են նստեցնում,—հարցրեց զարմացած Լուսիկը։

— Վոչ բոլորին, նրա՛նց, վորոնք աշխատում են ստեղծել բանվորների իշխանություն։

— Ուրեմն դու բալշեվի՞կ ես։

— Այո։

— Ապա ինչո՞ւ չես մնում այստեղ, որ քեզ չարչարե՞ն, արի մեզ մոտ։ Ա՛, մեզանում այնքա՜ն լավ է. գիտե՞ս, իմ հայրն էլ բանվոր է ու բոլշևիկ, ես էլ պիոներ եմ։ Արի, արի մեզ մոտ։



... Թիկն տված սեղանին լուռ կարդում էր

Բանտարկյալը նորից ժպտաց։

— Շա՜տ լավ, դու մենակ չես չէ՞, քեզ նման շատ շատերը կան։

— Բոլորդ, բոլորդ ընկե՛ր, մեզ մոտ բանվորական իշխանություն է։

— Բայց չէ՞ որ պիտի աշխատել այս երկիրն էլ դարձնել ձեր երկրի նման։

Լուսիկն ուզում էր ուրիշ հարցեր էլ տալ, բայց հանկարծ նրա ականջին հասավ Ինտերնացիոնալի մեղմ երգեցողությունը, արագորեն վոտքի ցատկելով պիոներական բարևով բռնեց։

Երգի հետ միասին լսվեց հերթապահի գոռգոռոցն ու սպառնալիքը, բայց հետո ամեն ինչ լռեց։

— Ի՞նչ է, թույլ չե՞ն տալիս, որ երգեն։

— Ոչ, մեզանում «Ինտերնացիոնալ» երգելն արգելվում է։

— Ուրեմն շա՞տ խիստ են պահում։

Բանտարկյալը ժպտաց առանց պատասխան տալու։ Հանկարծ լսվեցին համաչափ թխկթխկոցներ։

Լուսիկը ցնցվեց յեվ սպրտնեց։

— Այս ի՞նչ թխկթխկոցներ են,—հարցրեց նա։

— Մի վախի, հարևան ընկերն ինձ հետ խոսում է։

— Ինչպե՞ս թե,--աչքերը մեծ-մեծ բաց արած հարցրեց լուսիկը։

— Ա՛յ տես. նույն տեսակի թխկթխկոցով ես էլ նրան եմ պատասխանում։

Եվ իրոք, բանտարկյալն սկսեց մատներով խփել սեղանին։

Լուսիկը լուռ նայում էր առանց հասկանալու։

— Զարմանում ես չէ՞—հարցրեց բանտարկյալը, —սրանք նշաններ են, ամեն մի զարկը մի տառ է։

— Լա՛վ, ի՞նչ ասաց ընկերը։

— Որ իրեն վատ է զգում։

— Ի՞նչ է պատահել։

— Հացադուլ է հայտարարել։

— Ի՞նչ է, հաց չե՞ն տալիս։

— Ոչ, տալիս են, բայց նա չի ուտում, որպես բողոք։

— Իսկ պատճա՞ռը։

— Նրան գիրք, լրագիր չեն տալիս կարդալու։

— Որ մեռա՞վ։

— Ե՛, ի՞նչ արած։ Սակայն մեր գործն ապրում է, ու կապրի միշտ—պատասխանեց բանտարկյալը։

— Ընկե՛ր,—ասաց Լուսիկը,—գնամ մի նրան էլ տեսնեմ, նրա հետ խոսեմ։

Բանտարկյալը նորից գրկեց Լուսիկին ու ասաց.

— Իմ փոքրիկ պիոներ, ձեր երկիրը վերադառնալիս, իմ ընկերական բարևները տար խորհրդային երկրի բանվորներին ու Մոպր-ին։

Լուսիկն ուզեց դուրս գալ, բայց դեռ դռան շեմքը չանցած, հերթապահը նկատեց ու բռունցքը բարձրացրած՝ դեպի նա վազեց.

— Ա՜յ լակոտ... գոռաց նա։

Բանալին Լուսիկի ձեռքից ներքև ընկավ ու զրնգաց։ Նա վախից՝

— Վա՜յ... կանչեց...

...Զանգի զրնգուն ձայնը դասի վերջանալը հայտարարեց։



— Այ լակոտ... գոռաց նա

— Վա՜յ, ափսոս—բացականչեցին բոլորն էլ միաբերան,—դասը վերջացավ։

Լուսիկը շփոթված նայեց շուրջը յեվ չհասկացավ ինքը քնե՞լ էր, թե, այն, ինչ որ տեսավ՝ ուսուցչի պատմածն էր։ Մի քանի րոպե լուռ մտածեց, ձեռքերը գրպան տարավ, դուրս հանեց երկու բուքլի,

նայեց, նայեց, ապա նորից գրպանը դրեց։ Հայրիկից ստացած կոպեկները համարելով, յերկու բուբլի չեր գոյացել, վորով վորոշել եր գնել անպայման այն գեղեցիկ պայուսակը, վորը դրված եր կոոպերատիվի ցուցափեղկում, վրան էլ գրած՝ «յերկու բուբլի»։

Դասարանը բիչ-բիչ դատարկվեց։

Լուսիկն էլ դուրս յեկավ ու ընկերներից աննկատելի հեռացավ, առանձնացավ դպրոցի մի անկյուն, դուրս հանեց թուղթն ու մատիտը, մի ինչ վոր բան գրեց, ապա ջնջեց, նորից գրեց։ Գրված թղթում փաթաթեց յերկու բուբլին յեվ աստիճաններով վերեվ բարձրացավ, **Մոպր**-ի կազմակերպության գրասենյակը։

— Հը՛, ի՞նչ ես ուզում, փոքրիկ ընկերուհի,— հարցրեց **Մոպր**-ի քարտուղարը։

— Յես էլ եմ ուզում **Մոպր**-ին անդամագրվել,— ասելով՝ փաթաթված թուղթը դրեց սեղանի վրա։

Քարտուղարը բաց անելով թուղթը կարդաց, ծիծաղեց ու Լուսիկին նայեց։

— Սա շատ է, փոքրիկ ընկերուհի։

— Վոչ, շատ չե, խնդրեմ նամակն էլ ուղարկեք։

— Շատ լավ, շատ լավ, վաղն արի անդամատոմս ստացիր։

Լուսիկը գոհ յեվ ուրախ դուրս թռավ գրասենյակից, արագորեն ներքեվ իջավ յեվ փողոցներով անցնելիս, անցորդների յերեսին եր նայում.

— Արդյոք չասե՞լ, վոր յես **Մոպր**-ի անդամ եմ, կամ թե նրանք անդամագրվա՞ծ են **Մոպր**-ին։

*
* *

Հաջորդ որը, դպրոցի պատի լրագրում մեծ-մեծ տառերով գրված եր հետեվյալը.

— «Բուրժուազիայի բանտում տանջվող բայլշեվիկ բանվոր ընկերին։ Յես քեզ շատ եմ սիրում, իմ հայրն էլ բանվոր է։ Իմ համարած փողը, յերկու բուբլին, վորով ուզում եյի պայուսակ գնել, չգնեցի, ուղարկում եմ քեզ յեվ անդամագրվում **Մոպր**-ին։

**Կեցցե Մոպր**-ը։

Պիոներական բարեվներով՝
ԼՈՒՍԻԿ

1926 թ.

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԳԱՐՈՒՆ

**Խոսք՝ Մ. ԱՐՄԵՆԻ** **Յեղանակը Ռ. ՄԱՇԿՈՎԻ**

Հնչեցրեք փողը, խփեք թմբուկ,
քայլեք շարքերով հաղթական,
մեր վոտնաձայնից հողն է թնդում,
արեվը ժպտում է առատ։

Մենք ուրախ շարքերով գնում ենք,
գնում ենք շարքերով զգաստ,
հաղթական մեր կանչը հնչում է,
Պատանի պիոնե՛ր, պատրա՛ստ։

Մեր անցած տեղերում ծլում են
փողկապներ կարմրագույն յեվ ալ,
Մեր գլխին արեվը ցոլում է,
յերկինքը կապտագույն եմալ։

Մենք ուրախ շարքերով գնում ենք,
գնում ենք շարքերով զգաստ,
հաղթական մեր կանչը հնչում է,
պատանի պիոնե՛ր, պատրա՛ստ։

ԱԼԱԶԱՆ

# „ԿԵՑՑԵ ԼԵՆԻՆԸ"

1.

Ֆլորենցիայի մի ծայրամասում, ցած ու փայտյա ցանկապատով պատված, փռվել է գեղեցիկ պարտեզը։

Պարտեզում կիտրոնի ու նարնջի ծառեր կան։

Գարնանը, պարտեզում առաջին անգամ բացվում են նշենիները յեվ հետո դեղձի բաց կարմիր ծաղիկներով է զարդարվում ծառերի մեծ մասը։

Պարտեզում, ծառ ու ծաղիկների մեջ թաղված, լուցկու տուփերի նման, ընկել են միանման. յերկու ցած տներ։

Այնտեղ վարձով ապրում են յերկու ընտանիքներ։

Տարիներ են անցել, ինչ նրանք միասին, կողք-կողքի ապրում են, ու գնալով, այդ ընտանիքները կարծես միախառնվել, ձուլվել են իրար։

Կանայք միասին են լվացք անում, կարկատում։

Յերեխաները՝ միասին խաղում։

Իսկ տղամարդիկ միասին են վճռում խնդիրները։

Յերեկոներին, ընթրիքից հետո, նրանք իրար մոտ են հավաքվում։

Կանայք կողք-կողքի նստած կարում են։

Տղամարդիկ խոսում գործարանի, պատրաստվող գործադուլի, կուսակցության խնդիրների յեվ շատ հաճախ՝ Լենինի մասին։

Փոքրիկ Ռեվարդոն ու Ռոմեոն, յերբեմն նստած հայրերի ծնկներին կամ կողքին, լսում են ուշադրավ խոսակցությունը յեվ յերբեմն էլ, մի պատի տակ քաշված, թեվ-թեվի յերգում—

Մենք բանվորի զավակ ենք,
Քաջ ու սրտոտ, անվախ ենք,
Կարմիր գարնան ծաղիկ ենք,
Կարմիր գարուն, արի դե՛։
Կեցցե, կեցցե մեզ համար,
Լենին պապը մեզ համար ...։

Հայրերն յերբեմն խոսակցությունը թողած, մեծ հետաքրքրությամբ լսում են զավակների հետաքրքիր յերգը։

Յերբ մայիս է գալիս, պարտեզում բացվում են գույնզգույն վարդերը, յեվ վարդի թփի մոտ, ուրախ յերգում ու թռչկոտում են անբաժան ընկերները՝ Ռեվարդոն յեվ Ռոմեոն։

2.

Յերկուսն էլ մի դասարանումն են։ Իրար կողքի նստում, միասին սովորում, միասին կարդում յեվ հաճախ՝ միասին էլ պատասխանում ուսուցչուհու հարցերին։

Ռեվարդոն 9 տարեկան է։

Իսկ Ռոմեոն՝ 10։

Չնայած վոր ուսուցչուհին նրանց վրա բոլորովին ուշադրություն չի դարձնում, բայց նրանք ամենաընդունակ աշակերտներն են։




Ռեվարդոն և Ռոմեոն

***

Մայրենի լեզվի դասին, այդ որն ուսուցչուհին մի հետաքրքիր հարց տվեց։

Գուցե փորձելու համար աշակերտների «հավատքը», «տրամադրությունները», կամ գուցե զանազան անունների միջոցով սովորեցնելու համար նրանց վարժ գրելը.—

— Ամեն մեկը թող գրատախտակի վրա գրի իր ամենասիրելի մարդու անունը—հայտարարեց ուսուցչուհին այդ որը, մայրենի լեզվի դասին։

Ինչպես միշտ, այս անգամ էլ նա դաս պատասխանելու առաջնությունը տվեց ուռած ու կարմիր թշերով Աբրահամին, վորի հայրը հարուստ գործարանատեր էր յեվ վորին դասարանում **տռզած ճուռ** էյին ասում։

Աբրահամը, գնդակի նման գլորվելով, գրատախտակի մոտ գնաց յեվ հատիկ-հատիկ գրեց—

ՄՈՒՍՈԼԻՆԻ։

Ապա մոտեցավ մեծ վաճառական Գլորիուսի վորդի Ռիտոն յեվ այդ անվան տակին ավելացրեց—

ՀԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ։

Յերրորդը—

ՀԱՅՐԻԿ

գրեց։

Ապա ձայն խնդրեցին Ռեվարդոն ու Ռոմեոն։

— Մեզ թույլ տվեք միասին գրենք—խնդրեցին նրանք։

Ուսուցչուհին դեմ չէր, վորովհետեվ գիտեր, վոր նրանք սովորություն ունեն միշտ միասին գրել, միասին կարդալ յեվ միասին պատասխանել։

Ձեռք-ձեռքի, նրանք գրատախտակի մոտ գնացին, իրար յերես նայելով ժպտացին խորամանկ կերպով, ապա թրելով գրատախտակին գրված անունների վրա, սրբեցին, յեվ արագ կերպով ամեն մեկը մի բառ գրեց այնտեղ։

Յերբ ուսուցչուհին դեպի յետ դարձավ, գրատախտակի վրա ծուռ ու մուռ գրված եր—

ԿԵՑՑԵ ԼԵՆԻՆԸ։

Նուռն ծաղիկների պես կարմրեց ուսուցչուհին, այլայլվեց, յեվ գազազած վրա պրծավ—

— Փո՛ւչ անպիտան... յես ձեզ բանտ կուղարկեմ... սատանայի լակոտներ...։

Ապա, վորպես վարձատրություն գրած յերկու բառերի՝ Բեվարդոն ու Ռոմեոն չորս տաք ապտակ ստացան իրենց նիհար այտերին։

Վողջ դասարանն ահաբեկված եր։

* * *

Քիչ հետո ներս մտան յերեք ժանդարմներ։

Խնամքով դիտելուց հետո գրատախտակի «վտանգավոր» գրությունը, նրանք արձանագրություն կազմեցին, յեվ ապա առաջներն արած փոքրիկ հեղափոխականներին՝ դեպի վոստիկանատուն առաջնորդեցին։

Ամբողջ քաղաքը զարմացած դիտում եր, թե ինչպես վոստիկանները շրջապատած տանում եյին փոքրիկ մանուկների, մերկ ատրճանակների փողերը դեպի նրանք ուղղած։

3.

Բեվարդոյին ու Ռոմեոյին դատապարտեցին վեց ամսվա բանտարկության։

Նրանց յերկսին հատկացրել եյին մի առանձին կամերա։

Զբոսանքի ժամերին, մեծերի հետ, նրանք եվ ձեռները յետեվները դրած՝ շրջում եյին բանտի բակում։

Բանտում այնքան եվ տխուր չեր անցնում։

Ամբողջ որը նրանք թռչկոտում ու յերգում եյին—

Մենք բանվորի զավակ ենք,
Քաջ ու սրտոտ, անվախ ենք,
Կարմիր գարնան, ծաղիկ ենք,
Կամիր գարուն, արև, դե՛։
Կեցցե, կեցցե մեզ համար,
Լենին պապը մեզ համար...։

Իսկ շաբաթը մի անգամ յերկաթե ցանկապատի յետեվից, նրանք տեսնվում եյին իրենց հարազատների հետ։

Ու այսպես որերն անցնում եյին։

* * *

Յերկու ամիս անցել եր։

— Արի նամակներ գրենք, Ռոմեո։

— Ո՞ւմ։

— Հայրիկին, մայրիկին։

— Ժանդարմները չեն թողնում։

— Վոչինչ կը համարեցնենք։ Կաշառք կտանք։

— Լավ, գրենք։

— Լավ չի՞ լինի վոր մի նամակ եվ ժանդարմի պետին գրենք։

— Գրե՛նք,

— Մի լավ կատաղեցնենք։

— Են եվ վո՞նց. .

— Դե՛ սկսենք։

«Պարոն ժանդարմի պետ,

Բարեվ Ձեզ։ Մենք ենք գրում, բանտարկված Ռոմեոն ու Բեվարդոն։ Ինչպես ե ձեր քեֆը։ Մենք շատ լավ ենք այստեղ։ Լավ-լավ յերգեր ենք սովորում։ Ուզում ես մի որ գանք, քեզ համար եվ ասենք։ Կամ ավելի լավ կլինի հենց յերգը գրենք, դու յերգիր։ Հեշտ յեղանակ ե, կը սովորես։

Գրում ենք, դե լսիր։

Մենք բանվորի զավակ ենք,
Քաջ ու սրտոտ, անվախ ենք,
Կարմիր գարնան ծաղիկ ենք,
Կարմիր գարուն, արև, դե՛։
Կեցցե, կեցցե մեզ համար,
Լենին պապը մեզ համար...։

Լավ յերգ ե չե՞։ Չնեղանաս, պարոն ժանդարմի պետ։ Կեցցե Լենինը։

**Բեվարդո**
**Ռոմեո»**

Կարդացին գրածները։

Հռհռացին, թռվռացին, թեվ թեվի գցեցին, նամակի յերգը բարձրաձայն յերգեցին յեվ ապա—

— Դեհ, հիմա յել գրենք հայրիկին յեվ մայրիկին։

«Սիրելի հայրիկ յեվ մայրիկ.

Հիմա մենք իսկական հեղափոխականներ ենք։ Մեր մասին միք մտածի։ Սիրելի մայրիկ, մի պնակ տաք կերակուր վոր լինեք, լա՞վ կուտեյինք հա՞։ Սիրելի հայրիկ, թե Լե-



Նրանց ձերբակալեցին

նին պապին նամակ գրելու լինեք, մեզանից եվ բարեվ գրեցեք։ Ասեք վոր Բեվարդոն ու

*Ռոմեոն բանտարկված են։ Ասեք որ նրանք քեզ շատ են սիրում, Լենին պապի։*

*Մեր կողմից համբուրեցեք փոքրիկ Ջիմիկի թշերը։ Ասեք որ մենք իսկական հեղափոխականներ ենք։*

*Մնաք բարի, սիրելի հայրիկ յեվ մայրիկ։*

**Ռեվարդո**
**Ռոմեո»**

4.

*Նամակները տեղ հասան։*
*Մայրերն՝ արտասվեցին։*
*Հայրերը՝ հրճվեցին յեվ ուրախացան։*
*Իսկ ժանդարմերիայի պետը, գազազած հրաման տվեց տասական մտրակ հասցնել նամակ գրողներից ամեն մեկին յեվ բանտարկել նրանց հայրերին էլ։*

*1927 թ. հունվար*

---

# ՇՈՒՏՈՎ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԿԱԶԱՏԻ ՁԵԶ ՏԱՆՋԱՆՔՆԵՐԻՑ

## «ՄՈՊՐ»-Ի ՅԵՐԵՎԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՅԵՆԹԱՇԵՖ ԲԱՆՏԻ ԿԱԼԱՆԱՎՈՐՆԵՐԻՆ

*Յերևանի «Մյասնիկյան»-ի անվան պիոներական կոլլեկտիվի պիոներներս ուղարկում ենք ձեզ ջերմագին ողջույններ։*

*Մենք համոզված ենք, որ շուտով բանվոր դասակարգի հեղափոխությունը, տապալելով կապիտալի իշխանությունը, կազատի ձեզ տանջանքներից։ Մենք համոզված ենք, որ շուտով ձեզ մոտ էլ կստեղծվի այն կյանքը, որն ստեղծված է մեր յերկրում։*

*Սիրելի ընկերներ, մենք անդամագրվելով «Մոպր»-ին, ցանկանում ենք ձեզ հետ—բանտում տառապող հեղափոխականների հետ կապ պահպանել։*

*Հուսով ենք, որ դուք կպատասխանեք մեր այս փոքրիկ նամակին, կգրեք մեզ բանտում վարած ձեր կյանքի մասին և ձեր ցանկությունները՝ պիոներական կազմակերպության։*

*Մենք կատարում ենք Իլյիչի պատգամները։*

*Պայքարը շարունակելու համար* միշտ պատրաստ *ենք։*

*Բարևներ ձեր յերեխաներին։*

**Պիոներական բարեվներով՝**
**«Մյասնիկյան»-ի կոլլեկտիվ**

---



# 1871 ԹՎԻ ԿՈՄՈՒՆԱՆ

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ՀԱՅՏԱՐԱՐՈՒՄԸ

Դժվար թե գտնվի մի պիոներ, վոր լսած չլինի Փարիզի Կոմունայի մասին։



Կռիվ Փարիզի փողոցներում

Այս տարվա մարտի 18-ին, մենք տոնեցինք Փարիզի Կոմունայի հայտարարման 56-րդ տարեդարձը։

1871 թվի՝ մարտի 18-ին եր, վոր Փարիզի բանվորներն ու աշխատավորական խավերը,—այն ժամանակ յերբ տիրող կառավարությունը փորձեց զինաթափ անել նրանց, ավելի ազատ շահագործելու և ճնշելու համար,—վոտքի յելան և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։

Աշխարհում այդ առաջին դեպքն եր, վոր տապալվում եր շահագործողների տիրապետությունը և իշխանությունն անցնում եր աշխատավորությանը։

Փարիզի Կոմունան պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման առաջին օրինակն եր, աշխատավորների կառավարության առաջին ձևն ու փորձը։

Փարիզի Կոմունայի հայտարարումից հետո, հակահեղափոխականները, բուրժուաները փախան Փարիզից և իրենց ուժերը կենտրոնացրին Վերսալյում (Փարիզին մոտակա քաղաք)։ Այնտեղից նրանք կապ պահպանելով այն ժամանակ Ֆրանսիայի դեմ պատերազմի մեջ գտնվող Գերմանիայի կառավարության ու բանակի հետ, ամեն տեսակի դավեր հյուսեցին հեղափոխական Փարիզի և նրա տերըն ու անօրենը հանդիսացող Փարիզյան Կոմունայի դեմ։

## ԻՆՉՈ՞Ւ ՊԱՐՏՎԵՑ

Այդ նույն ժամանակ, Փարիզի Կոմմունան միայն ներքին բարենորոգչական աշխատանքներով եր զբաղված. նա հաստատեց ժողովրդի ընդհանուր զինման և բոլոր պաշտոնյաների ընտրականության կարգը, լիկեղեցին բաժանեց պետությունից, բանվորական կոոպերատիվ ընկերություններ հիմնեց և այլն։

Սակայն հիմնականը մոռացության տվեց։ Կոմմունայի ղեկավարները վճռական միջոցներ ձեռք չառան պատրաստվող հակահեղափոխության դեմ։ Հարկավոր եր ջախջախել այդ հակա-հեղափոխության վորջը — Վերսալը, բայց Կոմունայի ղեկավարները չեյին մտահոգվում այդ խնդրով։ Նրանք նույնիսկ այնքան վճռականություն չունեցան բռնագրավելու Փարիզի Ֆրանսիական բանկը, վորը կարող եր այդ սուր կարիքի ժամանակ մեկ միլիարդ յերկու հար-



Գնդակահարում են կոմունարներին

յուր միլիոն ռուբլի տրամադրել Կոմմունային։

Այդպիսի տատանումներն ու անվճռականությունը պետք է բացատրել նրանով, վոր բանվոր դասակարգը Ֆրանսիայում դեռ նոր եր հրապարակ եկել, և այդ պատճառով, նա, վորպես դասակարգ չուներ հարկ յեղած կոփվածություն։

Չկար միասնական և յերկաթյա պրոլետարական կուսակցություն, և շարժման ղեկավարության մեջ մեծ դեր եյին խաղում մանր բուրժուական խավերից յելած առաջնորդները, վորոնք դեռ չեյին խզել իրենց կապերն այդ խավերի հետ։

Յեվ վերջապես պարտության վերջին պատճառն այն պիտի համարել, վոր Փարիզի Կոմմունան թեև վորոշ փորձ կատարեց կապ հաստատելու գավառների հետ, դաշնակցել Ֆրանսիայի բազմամիլիոն գյուղացիների հետ, բայց նրան այդ չհաջողվեց։

Յեվ նա մնաց, վորպես մի հեղափոխական կղզի հակահեղափոխական շրջապատում։

Այդ ամենը հնարավորություն տվին Վերսալյում ապաստանած հակա-հեղափոխականներին, կազմակերպված կերպով արշավելու հեղափոխական Փարիզի վրա և 1871 թվի մայիսի 28-ին տապալել Փարիզի Կոմմունան։ Այդպիսով Կոմմունան 72 օրվա կյանք ունեցավ միայն։

## ԴԱՍԵՐՆ ԻԶՈՒՐ ՉԱՆՑԱՆ

Փարիզի կոմմունարները մինչև վերջին շունչը պայքարելով ընկան բարիկադների վրա։

Վերսալյցիները, Տիերի ղեկավարությամբ Փարիզ վոտք դնելով, սկսեցին արյան գետեր հոսեցնել։ Չեյին խնայում վոչ վոքի. ծեր թե յերեխա, կին թե տղամարդ, այդ մինչույն եր, բավական եր, վոր նա աշխատավորական խավերին եր պատկանում։ Բուրժուական տիկնայք իրենց հովանոցի սուր ծայրերով խառնում եյին վիրավորների վերքերը, վորպեսզի նրանք ավելի մեծ տանջանքով փչեն իրենց վերջին շունչը։

Այդ տանջանքները նրանց մեծ բավականություն եյին պատճառում։ Սարսափելի տանջանքներով գնդակահարվեցին ու մորթոտվեցին 3 հազար մարդ, իսկ Կոմմունայի համար ընկած կոմունարների թիվը 70 հազարի հասավ։



Ընկ. ՍԱԺԻՆ
Փարիզի կոմունարներից, այժմ կենդանի և ապրում է Մոսկվայում

Բուրժուազիան իր այդ գազանություններով արյունոտ դասեր տվեց բանվոր դասակարգին և ամենից առաջ այն, վոր ՅԵԹԵ ՆԱ ՏԵՂՆ ՅԵԿԱԾ ԺԱՄԱՆԱԿ ԱՆԽՆԱ ՉԼԻՆԻ ՀԱԿԱՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ, ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱՅԻ ԴԵՄ, ՆԱ ԱՄԵՆ ՐՈՊԵ ԿԱՐՈՂ Ե ԿՈՐՍՏԻ ՄԱՏՆՎԵԼ։ Իսկ հակահեղափոխությունը միշտ նրան չի խնայի յերբեք և չխնայեց Փարիզյան Կոմմունայի որերին։

Կոմունան իր փորձով սովորեցրեց պրոլետարիատին աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած հանդես գալ և հետեվողական ու վճռական քաղաքականությամբ ջախջախել հակահեղափոխության վերականգնանության բոլոր հնարավորությունները։

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ԴԱՍԵՐԸ ՅԵՎ ԱՅՍՕՐՎԱ ՄԵՐ ՊԱՅՔԱՐԸ

Այդ և ուրիշ դասերն եյին, վոր ոգտագործվեցին 1917 թվի հոկտեմբերին Ռուսաստանի պրոլետարիատի կողմից. դրանք եյին վոր Հոկտեմբերյան Մեծ Հեղափոխության հիմքը դարձան։

Փարիզի Կոմմունայի փորձն այսոր սեփականությունն է դարձել ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի, և նա այսոր աշխատում է այդ փորձի հիման վրա կազմակերպել իր պայքարը բուրժուական աշխարհի դեմ։

Այդ պայքարում շատերն են ընկնում, շատերն են գցվում բուրժուական բանտի ու աքսորի տանջարանները, և առաջին հերթին Խորհրդային Միության ազատագրված աշխատավորության պարտքն է ոգնել նրանց։

Իզուր չե, վոր հենց Փարիզի Կոմմունայի օրը մենք դարձրել ենք «ՄՈՊՐ»ի, հեղափոխության մարտիկներին ոգնող միջազգային կազմակերպության օրը։

Պիոներները պիտի աշխատեն իրենց ծնողներին բացատրել, վոր անհրաժեշտ է մտնել «ՄՈՊՐ»ի շարքերը։ Պիոներական կոլլկտիվն ինքը նույնպես պիտի անդամագրվի «ՄՈՊՐ»-ին։ Պիոներները պիտի կապ հաստատեն բուրժուական յերկրների իրենց յեղբայրների հետ և ոգնեն նրանց։

Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

# ՊԵՏԻՆ ՈՒ ԻՐ ԿԱՏՈՒՆ

Ձյո՜ւն էր բռնել սար ու ձոր,
Ձնի սարեր, ձնի ծով...
Պետին դուռը ծի՜կ արավ,
Դուրս նայեց ու ճի՜կ արավ,
Ա՜յ քեզ ձմեռ, ա՜յ քեզ գործ,
Էլ վո՞նց գնա նա դպրոց...

Թոնիրը տաք, ներսը տաք,
Ձմրան հերսին անգիտակ,
Տատը հեքյաթ թող ասի,
Ինքը վոտները պարզի...
Քիչ էլ չամիչ ու կաղին...
Էլ թող վզզա չար քամին։

Բակում Բողարը հաչեց,
Գոմից աքլորը կանչեց,
Այ, նրանք էլ գիտեն, վոր
Դպրոցի որ չի էսոր...
Բայց, դե, ինչպե՞ս չգնաս,
Ի՞նչ սուտ ասես, վոր մնաս...

— Տատի, ցավում ե փորըս...
— Վա՜խ, խավարի թող որըս,
Վո՜նց էլ տանջվում ե թոռըս...
Թոռ, տանիքը մաքրի,
Փորիդ ցավը շուտ կանցնի։

Տատին գիտեր,
Փորացավը Պետիկի,
Ես վոր լսեց հիվանդը,
Թռավ կարմիրը դեմքի,
—Չե...—կմկմաց,—հիվանդ
չեմ...
Համ հիվանդ չեմ, համ սաղ
չեմ...

Դրսից Լևոնը կանչեց.—
— Պետի, Պետի՜ այ Պետի՜...
— Այ դեմ առնես դու փետի,
Հենց դո՜ւ էիր պակասը...
Հանեց մեկը տրեխի,
Վզի աղլուխն էլ քանդեց՝
Մեկ ես քնջում,
Մեկ էն քնջում,
Ինքը մեջտեղ
Վո՜նց ե ճչում. .

— Վայ-մե՜, ուր ե, մեկը չկա՜,
Վարժատունից ուշացա՜,
Աղլուխ, տրեխ, վո՜նց անեմ...
—Վա՜խ, թող գլխիս հող ցանեն,
Վոնց էլ տանջվում ե թոռըս,
Բա էսպես էլ բա՞ն կանեն։

Վերցրու, վորդի,
Իմ քոշերը,
Քաշի վոտիդ,
Գնա դասիդ,
Մինչև գտնենք տրեխը,
Հենց էդ տեսան գողերը...

Էդ էր պակաս, քոշերը,
Նրա յերկար պոչերը,
Քոշերը՝ ծանր,
Վոտները՝ մանր...

— Քոշերով չե՜մ գնա յես, —
Ասավ Պետին սևերես,
Տատին էստեղ ճարահատ՝
— Լավ, մի գնա,
Յես կը գնամ,
Վարժապետին լուր կըտամ,
Թե իմ Պետիկ երեխեն,
Կորցրել ե տրեխը...

Պետիկի սիրտը թնդաց,
Խինդը պահեց քթի տակ,
Յեվ սուտ ու մուտ թնկթնկաց.
— Բա վո՜նց... դասի չգնա՜մ...
Արցունքի տեղ ջուր յեկավ,
Տատին նրան դուր յեկավ,
Մեկ էլ... էդ ինչ պատահեց,
Գործը մեկից շո՜ւռ յեկավ...

Էդ անասուն
Անտեր փիսոն,
Ես կողմ, էն կողմ լոք արավ,
Քնջում կորավ, հոփ արավ,
Ու թելի հետ խաղալով,
Հանեց տրեխը քնջից...
Վո՜նց էրվեց սիրտը խեղճի...

— Ախ դու, ախ դու,
անտեր կատու,
Գետին մտնես,
Դու իմ Պետուն
Դասից զրկե՜ս...

Պետի, դես տուր մի փետը,
Զրից անեմ յես հետը...»

Փետի ձենը վոր լսեց,
Պետին քիթը խզմզեց.
Հետո չարուխը հագավ,
Կատուն փեշի տակ առավ,
Ձների մեջ լոք արավ,
Էստեղ էնտեղ հոփ արավ,
Դուռը բացեց ուս արավ,
Մտավ ներսը սուս արավ։

Վարժապետը—«ա՛, բ, գ. »
Անցնում էն դասը—«կատուն»,
Ու կարդում ե Աբգարը,
Քրտինքը վո՜նց ե կաթում...
Իսկ Պետին լուռ լսում ե,
Փիսոն էնտեղ ֆսում ե,
Աբգարը դեռ խոսում ե,
Չե՜, լավ բան ե ուսումը..

Կատու, կատու, դու կատու,
Մեկ էլ քունը քըշ անես,
Փեշի տակից փըշ անես,—
Պա-հո՜, առա՜վ,
Դասարանի մեջը թռավ.

Վարժապետը առավ նրան,
Ու սեղանի վրա դրավ,
— Էս տես՝—ասավ,—աշակերտնե՜ր,
Կատուն էսպես չորս թաթ ունի,
Յերկու ականջ, մեկ քիթ ունի,
Յերկու աչքեր, պոչ ու յերես,

Էսպես, էսպես
Էսպես, էսպես...

Պետին էլ վո՜նց լսում ե,
Չե, լավ բան ե ուսումը ..։

1927 հունվար

Վ. ԱՆԱՆՅԱՆ

# ԱՐՋԻ ՃԱՆԿԵՐՈՒՄ

*(Պատանի վորսորդի հուշերից)*

## ԴԵՊԻ ՎՈՐՍԻ

Լույսը դեռ չէր բացվել, յերբ յես ու ընկերս, տաք հագնված, գլուխներս բաշլըղներով փաթաթած, վորսկան Շաքարի հետ դուրս յելանք գյուղից։

Ճանապարհով մի քիչ առաջ գնալուց հետո, խոտորվեցինք ու մտանք անտառը։



Շաքար ամին կրակեց

Ցուրտը նեղում էր։

Այժմ քայլում ենք անտառով։ Ձյունի տակ թաղված չրփին (չորացած ճյուղեր) ճարտատելով փշրվում է մեր վոտների տակ։

Այս ու այն թփի, քարի տակից, կամ փոսի միջից, յերբեմն դուրս են թռչում ու խլուշ-խլուշ անելով փախչում նապաստակներ, կաքավներ և այլ մանր կենդանիներ։

Ամեն անգամ, մի նապաստակ կամ թռչուն տեսնելիս, իմ պատանի սիրտը վեր էր թռչում ու ձեռքս տանում էի պատրաստ պահած կաբաբինիս (կարճ հրացան) վ. տը։

— Այ տղա, ջահելություն մի անի, խրատում էր Շաքար ամին։ Դրանք ինչ են, վոր գյուլլա փչացնես, այ, հիմի հասնենք արջերի բունը, են ժամանակ ինչքան հունար ունես ցույց տուր։

Կտրեցինք անցանք սար ու ձոր, քար ու քարափ ու դեմ առանք մեր վորսորդատեղի—Արփավուտ ծմակին։

«Արջաբունն» էր։ Դեմքս վառվում էր ուրախությունից։ քիչ անց արևը դուրս յեկավ։

Մի ջինջ ու պայծառ առավոտ էր։

Ձյունի հատիկները, հազարավոր ալմաստների ու գոհարների նման պսպղում, փայլփլում էին արևի ճառագայթների տակ։

Զարթն ու մոշահավը*) կղկղալով թփից-թուփ, ծառից ծառ էին թռչում։

Դեմ առանք մի ահագին սարի։

Ճանապարհներս դժվարացավ։

Այն ժամանակ յես 15 տարեկան էյի։ Ձյունը մինչև գոտկատեղս էր հասնում։

Մոթալ փափախս ու յերկու զույգ քուլքի գուլպաներս պաշտպանում էին ականջներս ու վոտներս ցրտահարությունից։

## Ի՞ՆՉ ԵՐ ՊԱՏՄՈՒՄ ՇԱՔԱՐ ԱՄԻՆ

Շաքար ամին, չնայած իր ծեր հասակին, արջի նման փշրելով հանդիպած թփերն ու ցախ ուցուխը, պատռելով ձյունի դամբերը**), առաջ էր գնում ու ճամփա բացում ինձ և ընկերոջս՝ Վաղինակի համար։



Վաղինակն արջի ճանկերում

Ամբողջ ճանապարհին, Շաքար ամին պատմում էր իր կյանքից այնպիսի արկածներ, վոր մենք փշաքաղվում էինք։

*) Անտառային թռչունների տեսակներ են։

**) Քամու հավաքած ձյան կույտեր։

— Հրեն էն քարափը տեսնո՞ւմ էք, նրա տակին էն տարին, մալականի յեզան չափ մի բախրա*) սպանեցի, պոզերը վո՛նց վոր ծառի ճղներ։

— Բունտի**) տարին էլ, հը՛, դուզ ես վախտը կլիներ, ես ձորում մի արջ սպանեցի, յերեք լուծ գոմշով անջախ տուն հասցրինք։

Մենք զարմանքով ու հափշտակված լսում էինք Շաքար ամուն։

Յեվ այդպես 45 տարվա վորսկան Շաքարի գլխով ամեն ինչ անցել էր։ Չկար մի քար, մի թուփ, մի ձոր, վորը ներկված չլիներ Շաքար ամու գնդակին զոհ գնացած կենդանիների արյունով.



Յես կրակեցի...

Դրա համար էլ, Շաքար ամու թևի տակ, այդ մթին ծմակներում, այդ արջերի ու գայլերի աշխարհում, իմ պատանի սիրտն անահ էր ու լի կորովով...

## ՆԱԽԱՃԱՇՆ ԱՆՏԱՌՈՒՄ

Ընկնելով ու վեր կենալով, հաճախ լեռնալանջի զառիվայրերից կոճղինման գլորվելով, մերթ ընդ մերթ էլ ժայռերը մագլցելով, վերջապես Շաքար ամին մեզ կանգնեցրեց մի աղբյուրի մոտ։

Նստեցինք։

Տոպրակներից հանեցինք հաց ու պանիրը։ Յես հանեցի նախօրոք ձեռքով լոշի մեջ փաթաթած ղաուրման և սկսեցինք ախորժակով ուտել։

— Հանդի հացն ինչ համո՛վ է,—բացականչեցի յես։

— Հա, բա՜, համով է,—ասաց Շաքար ամին ու խոսքը փոխելով, մատով ցույց տվեց դիմացի ձորի մյուս կողմն ընկած քարափները։

— Մեր քեռի արջն էնտեղ ա, ինչպես յերևում է ես առավոտ բնից դուրս ա յեկել. չունքի հեռվից չարթերի չոթ-չոթոց ա գալի։ Էդ անտեր չարթերն արջ տեսնելիս եղպես ղալմաղալ են բարձրացնում։

Շաքար ամին տասնյակ տարիների փորձից գիտեր, թե վո՞ր գազանի հրևալն ի՞նչ տրամադրություն է ստեղծում անտառի այդ յերգիչների մեջ։

Զոքեցինք ջուր խմացինք ու հետևեցինք Շաքար ամուն։

## ԱՐՋԻ ՀԵՏՔԵՐՈՎ. ՇԱՔԱՐ ԱՄՈՒ ՀՐԱՀԱՆԳՆԵՐԸ

Յերբ մտանք ձորը, Շաքար ամին ձեռքի շարժումով կանգնեցրեց մեզ։ Լուռ հնազանդվեցինք։

Հենց մեր վոտների տակ, առվի մոտ, ձյունի վրա, ինչ վոր մեծ չանչերի հետքեր կային։

Կարծես ձյունի վրա բոբիկ մարդ էր ման յեկել։

— Արջի իզն (հետքը) ա,—շշնջաց Շաքար ամին և ուսից ցած բերեց հրացանը։

Սիրտս սկսեց թփրտալ՝ վանդակն ընկած թռչունի նման։

— Հիմի նա «չլեն» (բունը) ա մտել. չլեն ես վերի քարափների մեջն ա. իգը վեր կալեք ու կամաց բարձրացեք վերև։ Այ պուճուր,—դարձավ ինձ Շաքար ամին—դու հլա ջահել ես, հեռու, մի քարի տակ կմտնես ու սուս կանես, իսկ դու, Վաղինակ, կգնաս երի (այր) առաջ կկանգնես, արջի բնի մեջ կկրակես և յետ կըփախչես՝ տափ կանես։

— Բա ո՞վ ա սպանելու արջին, Շաքար ամի,—անհանգստացած հարցրի յես։

— Տնաշենի տղա, հո դու չե՞ս սպանելու, էդ ղասաբ Շաքարի գործն ա, դուք հլա առուն չանցկացած, յես արջի բնի գլխի քարին նստած կլինեմ։ Դուք արջին բնից հանեցեք, նրանից յետը իմ գործն ա։

Կարգադրեց Շաքար ամին և աշխուժությամբ քարից քար, փոսից փոս թռչելով, անձայն ու անշշուկ անհայտացավ մթին ծմակում։

## ԱՐՋԻ ՃԱՆԿԵՐՈՒՄ

Մնացինք մենակ։ Արջի հետքերով սկսեցինք մագլցել լեռն ի վեր։ Տեղ տեղ արջը կանգ էր

*) Բունտ—ապստամբություն, խոսքը 1905 թըվի մասին է.

**) Բախրա—յեղջերու։

*առել, ձյունը յետ տվել և չորացած տերևների տակից տանձ, խնձոր, կաղին, հավաքել՝ կերել:*

*Այդ վայրենի վայրերը որքան վեհ ու գեղեցիկ էին, այնքան ավելի սարսափելի և ահարկու էին. որքան արջի բնին էինք մոտենում, այնքան ահը պատում էր մեզ:*

*Յերբ բավական մոտեցանք քարափին, տեսանք Շաքար ամուն: Նա արծվի նման թառել էր քերծի գլխին ու տաճկական հրացանը ձեռքին պատրաստ՝ չեշտակի նայում էր ժայռի ստորոտի ծակին, որն ըստ յերևույթին արջի բունն էր:*

*Նա քարափի կատարից ձեռքով ինձ նշան արավ: Յես յետ ընկա ու թաքնվեցի մի մեծ քարի յետև:*

*Վաղինակը սրտապնդված առաջ անցավ ու արջի բնի առաջ հետքն ստուգելով և համոզվելով, որ արջը բունն է մտել ու քնել, հրացանի փողը մեկնեց դեպի բույնը, կրակեց ու յետ փախավ: Ժայռը թնդաց նրա հրացանի ձայնից ու նրան հաջորդող արջի խուլ մռնչոցից: Արջը բնահարամ յեղած, բնից դուրս յեկավ ու դժգոհ մրթմրթալով առաջ շարժվեց: Այդ ժամանակ յես թաքստոցից տեսա նրա բրդոտ ահագին մարմինն ու գլուխը:*

*Շաքար ամու հրացանից թռած յերկու գնդակները մխվեցին արջի մեջքին: Արջը գազազած իրեն շպրտեց փախչող Վաղինակի կողմը: Վաղինակը վայրկենապես շուռ յեկավ ու սկսեց արագ-արագ աննպատակ կրակել: Այդպիսով վերջացան նրա հրացանի պահեստատուփում յեղած փամփուշտները: Վաղինակը յետ-յետ գնալով դեմ առավ մի հսկա կաղնի ծառի, ու մինչդեռ շուռ կգար փախչելու՝ արջը վրա հասավ, կանգնեց յետևի թաթերի վրա ու պինդ գրկելով Վաղինակին, սկսեց ծամել հրացանը և ձյունի մեջ քլոլել, փշրել ընկերոջս ոսկորները:*

*— Վա՜յ, մեռա՛,... Շաքար ամի հասի՜ր...բղավում էր Վաղինակն արջի տակից:*

*Դողալով կարաբինս պատրաստեցի ու մի կրակոցով ջարդեցի արջի յետևի ձախ ոտը: Նա ցավից մռնչաց ու թաթերի մեջ առավ Վաղինակի գլուխը... Շաքար ամին շատ հեռու յեր. նա ձեռքի նշանով ինձ սաստեց ու նշան բռնելով՝ կրակեց արջի ու Վաղինակի վրա...*

## *ԱՐՋԸ ՄԵՐ ՃԱՆԿԵՐՈՒՄ*

*Յերկուսն էլ արյունաշաղախ, գլորվեցին գառիվայրով դեպի ձորը...*

*Ձյունը ներկվել էր ալ կարմիր արյունով:*

*— Վա՜յ... Վաղինակին սպանեցիր, գոռում էի յես: Մինչ ես լալիս էի, Շաքար ամին հանգիստ իջավ քարափից:*

*— Այ պուճուր, լաց ու կոծ մի անի, որսական Շաքարը գիտի թե իրեն գյուլլեն վորտեղ ա գնում: Իմ գյուլլի ճամբեն արջի գլխով ու Վաղինակի ականջի տակով ա գցած, — ասաց նա ինքնավստահ ու ինձ հետ մի յերկու հանաքներ անելով իջավ ձորը:*

*Անչափ մեծ յեղավ իմ զարմանքն ու ուրախությունը, յերբ տեսա ձորի մեջ Վաղինակին ողջ և առողջ, որը հրացանի կոթով կատաղած ծեծում էր սպանված արջի գլուխն ու հետն էլ հայհոյում:*

*— Յես քո տիրոջ հերն անիծեմ, դու ինձ քլոլե՞ս հա՞, հալբաթ տուն կհասնենք: տես վոնց եմ ջիգարդ կրակին գցում:*

*— Լեզուդ բացվեց հա՛, — ասաց Շաքար ամին ու փառ-փառ ծիծաղեց:*

*— Յեթե Շաքար ամին չլիներ, հիմի յես ու դու արջի փորում փիլիսոփայություն էինք անում, — նոր չորացող արցունքների միջից կատակեցի յես:*

*— Դե տղերք, հանաքի ժամանակ չի. լծվեցեք տանենք:*

## *ՎԵՐԱԴԱՐՁ*

*Արջին, այդ ամենի գազանին, պետք է տանեյինք հեռավոր մի ձորում ընկած գյուղի գոմերը:*

*Հրացաններն յես վերցրի ու նստեցի արջի մեջքին: Շաքար ամին, այդ ամդահա մարդը բռնեց արջի յետևի ոտներից, Վաղինակն էլ գոտին անցկացրեց արջի գլխին ու ձյան վրայով ճամփա ընկանք:*

*Արջը սղղում էր թեք սարալանջով, իսկ յես մեջքին նստած հանաքով քշում էի «լեզներիս» և իմ ուրախության ճիչերով թնդացնում ամայի անտառը:*

*Գոմերում ապրող հոտաղները, տավարածներն ու չոբանները դուրս թափվեցին և հարա-հրոցով դիմավորեցին մեզ:*

*— Պա՛հ, պա՛հ, Շաքար ամին արջ ա բերել. ես անտերի ռեխին մտիկ ա՛, վո՜նց ես. են որը յամ էր թուխ ղոչի միսը, որ ձեռիցս խլեցիր:*

*Շները վրա եյին թափվում ու ամենի գազանին տեսնելով, կոնծկոնծալով յետ փախչում: Նրանցից շատերն էյին Վաղինակի նման արջի*

ճանկերն ընկել ու բլոկվել։ Հասանք գյուղը։ Մեզ տարան մի ոդաջաղ (գոմանման տուն)։



Շաքար ամին պատմում է իր արկածները

Տղերքն իսկույն թեժացրին բուխարու կրակն ու հավաքվեցին շուրջը։

Տղերքի մի մասն արջն էր քերթում ու աղմկում և զարմանում մի թիզ հաստ ճարպի վըրա, մյուս մասն անտառ գնաց, ծառի ճյուղերից խորովածի համար շամփուրներ շինելու։

Յերբ ամեն ինչ պատրաստ էր, Շաքար ամին մի քոլամանի (անտառավարի) խորոված պատրաստեց։

Վրա թափվեցինք ու ախորժակով կերանք. մի կողմից էլ ծիծաղում և շուլուխ էյինք անում Վաղինակի «փահլեվանության» վրա։

Շաքար ամին շուլուխով պատմեց, թե ինչպես Վաղինակը «ասլանի նման կռիվ էր բռնել արջի հետ ու քիչ էր մնում նրան սաղ-սաղ ուտի»։ Տղերքը քահ-քահ խնդացին Վաղինակի վրա։

Այնուհետև, թեժ բուխարու առաջ նստած, ամբողջ գիշերը լսում էյինք Շաքար ամու պատմածքները՝ իր վորսորդական կյանքի այս կամ այն դեպքի մասին։

Դրսից, յերբեմն քամու հետ մեր ականջին էր հասնում մոտակա ծմակներից յեկող գայլերի վոռնոցն ու շների պատասխան՝ հաչոցը*)։

*) Շաքարը Ղազախի (Դիլիջանի) գավառի ամենահմուտ ու քաջ վորսորդներից մեկն է. Նրա համբավը տարածված է նաև հարևան գավառներում։ Այժմ նա կենդանի յէ, ապրում է Պողոս-Քիլիսա գյուղում, և չնայած իր 67 տարեկան հասակին, դարձյալ պարապում է վորսորդությամբ։ Հիմա յել նրա գնդակը «գետին չի ընկնում»։

Ա. ՏԵՆԴԻԲԱՐՅԱՆ

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ

## ՅԵՐԿՈՒ ԹՇՆԱՄԻ ԲԱՆԱԿՆԵՐ

1917 թ. Ռուսաստանում, բանվորները, գյուղացիների հետ միասին, տապալեցին թագավորի, յեվ ապա՝ բուրժուաների ու կալվածատերերի իշխանությունը։ Նրանք առաջին անգամ աշխարհում բանվորների պետություն—Խորհրդային Իշխանություն հաստատեցին։

Այդ ժամանակ, ամբողջ յերկրագունդը բաժանվեց յերկու հակառակ մասերի. մի կողմը Խորհրդային Հանրապետությունների Միությունն է, իսկ մյուս կողմը բուրժուական պետություններն են, ուր բանվորներն ու գյուղացիները ճնշվում, շահագործվում են։ Այդ յերկու կողմերն իրար թշնամի յեն, վորովհետև իշխանության գլուխն են անցած տարբեր յեվ հակառակորդ դասակարգեր։

Յեթե յերկրագնդի ամբողջ ցամաքը բաժանենք վեց մասի, մեկ մասն ընկնում է մեր Խորհրդային Միությանը, իսկ մնացած հինգ մասերը պատկանում են բուրժուական պետություններին, կամ նրանց ազդեցության տակ են գտնվում։

Ինչպես տեսնում ենք, մեր յերկիրը հինգ անգամ փոքր է բուրժուական յերկրներից յեվ կարող է թվալ, վոր կապիտալիստական պետությունները մեզանից ավելի ուժեղ են ու կարող են հարձակվել մեզ վրա յեվ հաղթել, յերբ ուզենան։

## ԲԱՅՑ ԱՅԴՊԵՍ ՉԻ

Նախ՝ կապիտալիստական պետությունները համերաշխ չեն, մրցում են իրար հետ յեվ շատ ժամանակ ուղղակի թշնամի յեն իրար։ Այնքա՛ն թշնամի, վոր հաճախ պատերազմում են իրար հետ՝ շուկաներ, գաղութներ ձեռք գցելու համար (օր. 1914 թվին պատերազմեցին, իրար թալանեցին ու կոտորեցին)։ **Այդ ի հարկե թուլացնում է նրանց** ուժը։ Բայց յեթե նրանք կարողանան էլ համաձայնության գալ, դարձյալ չեն կարող մեզ հաղթել։

Ամենից առաջ հենց այն պատճառով, վոր **մենք մենակ չենք:**

## ՄԵԶ ՀԵՏ ԵՆ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ

Կապիտալիստական յերկրներում բանվորները դեռ ապրում են բուրժուաների ճնշման տակ, բայց ցանկանում են մեր յերկրի բանվորների նման տապալել բուրժուազիային յեվ իշխանությունը վերցնել իրենց ձեռքը։

**Այդ միլիոնավոր բանվորները գործադուլներ են անում յեվ յերբեմն կարողանում են՝ ուղղակի զենքը ձեռներին ապստամբում են բուրժուական կարգերի դեմ։** Գերմանիայում, բանվորները մի քանի անգամ ապըս-

տամբել են յեվ կռվել բուրժուական կարգերի դեմ, բայց շնորհիվ գերմանական մենշեվիկների դավաճանության՝ չեն կարողացել հաղթել։

Հունգարիայում, 1919 թվին, բանվորները մինչեվ անգամ հաղթել եյին յեվ հաստատել խորհրդային իշխանություն, բայց դարձյալ մենշեվիկների դավաճանության շնորհիվ՝ վերջը պարտություն կրեցին։

Անգլիայում, անցյալ տարի, մեկ միլիոն ածխահատ բանվորներ 6 ամիս շարունակ գործադուլ արեցին։ Դուք բոլորդ կհիշեք, թե ինչպիսի մեծ օգնություն հասցրեց ԽՍՀՄ բանվոր դասակարգն իր այդ գործադուլավոր յեղբայրներին։

Յեվ այդ հեղափոխական բանվորությունը **թույլ չի տա յերբեք**, վոր կապիտալիստները հարձակվեն ԽՍՀՄ վրա, արյան մեջ խեղդեն խորհրդային իշխանությունը։

## ՄԵԶ ՀԵՏ ԵՆ ԲՈԼՈՐ ՃՆՇՎԱԾ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ

Կապիտալիստական պետությունների գաղութներում ապրող ժողովուրդներն արթնացել են խոր քնից, ցանկանում են ազատ յեվ անկախ լինել, ցանկանում են դուրս վռնդել իրենց յերկրից կապիտալիստ թալանչիներին։

Աֆրիկայի հյուսիսային մասում ապրող փոքրիկ մի ժողովուրդ, **ռիֆֆերը**, Աբդ-Էլ-Քերիմի ղեկավարությամբ, երկար ժամանակ կռվում եյին ֆրանսիական ու իսպանական թալանչիների դեմ։ Վերջերս յերկու ապստամբություն տեղի ունեցավ—մեկը Սամարայում, մյուսը՝ Ճավա կղզում։

Հետո Չինաստանը. այդ յերկիրը 4 միլիոն քառ. մղոն տարածություն ունի, յեվ այնտեղ 400 միլիոնից ավելի ժողովուրդ է ապրում։ Այսօր, չինական ժողովուրդը պայքարում է իր ազատության համար։ Այդ պայքարը ղեկավարում է Չինաստանի հարավում գտնվող Կանտոն քաղաքի հեղափոխական կառավարությունը։

Կանտոնցիները կռվում են այն գեներալների դեմ, վորոնք պաշտպանում են անգլիացի, ճապոնացի յեվ այլ կապիտալիստների շահերը։ Այդ գեներալները յեվ նրանցից գլխավորը—Չան-Ցո-Լինը մեծ օգնություն են ստանում կապիտալիստական պետություններից։

Չնայած նրան, վոր անգլիական յեվ մյուս բուրժուական պետություններն այերոպլաններ, թնդանոթներ ու ռազմանավեր են ուղարկում Չինաստան, կանտոնցիները միշտ ուժեղ են դուրս գալիս յեվ հաղթում, վորովհետեվ, չինական ժողովուրդը համակրում յեվ օգնում է նրանց։

Գաղութային ճնշված ժողովուրդները տեսնում են, վոր միակ յերկիրը, ուր ժողովուրդներն ազատ են, չեն ճնշվում ու հալածվում—Խորհուրդների յերկիրն է։

Յեվ նրանք իրենց միակ բարեկամը համարում են ԽՍՀՄ յեվ միջազգային հեղափոխական բանվորությունը։

Պարզ է, վոր մեր համակրանքը չինական հեղափոխության՝ յեվ իրենց ազատության համար պայքարող բոլոր ժողովուրդների կողմն է։ Այդ ժողովուրդները մեր դաշնակիցներն են։



Չեմբերլենը՝ մեր պատասխանը կարդալուց հետո

## ՄԵՐ ՅԵՎ ՆՐԱՆՑ ՄԻՋԵՎ ՊԱՅՔԱՐ ՉԻ ԴԱԴԱՐԵԼ

Կար ժամանակ, յերբ մեր թշնամիները մեզ հետ թնդանոթներով ու գնդացիրներով եյին կռվում։ Մեր յերկրի բանվորներն ու գյուղացիները ջախջախեցին հակահեղափոխական բոլոր ուժերին յեվ դուրս վռնդեցին նրանց։

Այժմ մենք չենք պատերազմում։ Բայց կարելի՞ յե ասել, վոր պայքարը դադարել է։ Վոչ, չի կարելի։

Չնայած նրան, վոր կապիտալիստները զորք չեն ուղարկում մեր դեմ, բայց վոչ մի բոպե չեն դադարում մեր դեմ պայքարելուց։ Պայքարը չի դադարել, փոխվել են միմիայն նրա ձեվերը։

## ԽՍՀՄ-ը ՆՐԱՆՑ ԱՉՔԻ ՓՈՒՇՆ Է

Կապիտալիստական խոշոր պետությունները (ինչպես Անգլիան) կազմակերպում յեվ զինում են մեր հարեվան փոքր յերկրները—Լեհաստանը, Ռումանիան, Լիտվիան, Լատվիան յեվ այլն։ Նրանք աշխատում են այդ յերկրների կառավարությունների մեջ իրենց մարդիկն ունենալ, վորպեսզի հարմար դեպքում հարձակվեն մեզ վրա։ Նրանք, ի՞նչպիսի սուտ ու զրպարտություններ ասես չեն տարածում Խորհրդային Միության մասին։ Կապիտալիստական պետությունները չեն կարող հաշտ աչքով նայել, թե ինչպես աշխարհի $^{1}/_{6}$ մասում, բանվորները գյուղացիների հետ միասին վոչ միայն տապալել են կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը, այլեվ 10-րդ տարին է՝ ինչ հերոսական ջանքերով սոցիալիզմ են կառուցում։

Կապիտալիստական պետությունների մեջ, Անգլիան մեր ամենակատաղի թշնամին է, յեվ նա յե, վոր միշտ մեր դեմ դավեր է նյութում։

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏՆԵՐՆ ԱՆՀԱՆԳՍՏԱՆՈՒՄ ԵՆ

Վերջերս, Չինաստանում հեղափոխական բանակը խոշոր հաղթանակներ է տանում։ Այդ շատ է անհանգստացնում անգլիական կապիտալիստներին։ Չե՞ վոր նրանք ամեն օր ռազմամթերք, թնդանոթ ու զորք են ուղարկում չինական հակահեղափոխականներին՝ մեծ հեղափոխությունը ճնշելու համար։ Եղ մե՛կ, մեկ էլ են, վոր ածխահատ բանվորների անցյալ տարվա գործադուլը նրանց կառավարությունը ԽՍՀՄ բանվորների ու գյուղացիների դեմ շատ է ուժեղացրել։

Անգլիայի կապիտալիստների մի մասը, վոր «պնդաճակատներ» են կոչվում, պահանջում եյին խզել անգլո-խորհրդային առեվտրական պայմանագիրը, «դուրս քշել կարմիրներին» Անգլիայից։

## ԱՐՏԸ ԽՈՍՈՒՄ ՉԵՄԲԵՐԼԵՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հենց այդ «պնդաճակատների» ազդեցության տակ, անգլիական կառավարությունը, իր մինիստր Չեմբերլենի միջոցով, մի հայտագիր ուղարկեց Խորհրդային կառավարությանը։ Անգլիական կառավարությունը, մեղադրում մեր կառավարությանը, վոր նա ոգնում է Չինաստանի հեղափոխությանը, միջազգային բանվորական շարժմանը, վոր իբր թե ածխահատները Խորհրդային կառավարության փողերով են գործադուլ սարքել յեվ այլն։ Յեվ վերջն առաջարկում էր այդ բոլորին վերջ տալ, թե չէ իրենց հարաբերությունները մեզ հետ կխզեն։

## ՄԵՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Նման սպառնալիքներով վոչ վոք չի կարող բանվորա-գյուղացիական յերկրի միլիոնավոր աշխատավորներին վախեցնել։ Ինչ վերաբերում է հեղափոխական ագիտացիային, դա վոչ թե կառավարության, այլ կոմունիստական կուսակցության գործն է։ Հետո, վոչ թե Խորհրդային կառավարությունն է «իր փողերով» ոգնել ածխահատների գործադուլին, այլ իրենք, ԽՍՀՄ աշխատավորներն են ոգնության հասել իրենց յեղբայրներին։ Իսկ վոչ մի հեղափոխական կառավարություն չի կարող արգելել հեղափոխական կուսակցության գործունեությունը յեվ աշխատավորության ցանկությունններին արգելք հանդիսանալ։

«Պնդաճակատների» գլուխը չի մտնում այն բանը, վոր թե չինական հեղափոխությունը յեվ թե բանվորական շարժումն ունեն իրենց պատճառները։ Ինչքան ուզում են ԽՍՀՄ կառավարության մեղադրեն, վոչինչ դուրս չի գա։

## ՉԵՄԲԵՐԼԵՆԸ ԼՌՈՒԹՅԱՄԲ ՊԱՏԱՍԽԱՆԵՑ

Խորհրդային կառավարության պատասխանին, Չեմբերլենը լռությամբ պատասխանեց, սակայն, «պնդաճակատները» չեն դադարում մեր դեմ գործելուց։ Նրանք վոչ մի ժամ չեն մոռանում, վոր յեթե ԽՍՀՄ շարունակի իր գոյությունը յեվ զարգացումը, յեթե հաղթի չինական հեղափոխությունը, նրանց գործերը վատ կլինեն։

Այդ դրությունը մեզ այն համոզմունքին է բերում, վոր պատերազմն անխուսափելի յե՝ ԽՍՀՄ յեվ կապիտալիստական աշխարհի միջեվ։ Դասակարգային թշնամիները չեն կարող յերկար ժամանակ հաշտ ապրել, իրար կողք կողքի։

Սակայն մոտիկ ապագայում, գարնանը կամ աշնանը պատերազմը հավանական չէ։ Վորովհետեվ մեր թշնամիները դեռ պատրաստ չեն պատերազմելու։ Նրանք ավելի շատ են վախենում պատերազմի հետեվանքներից, քան մենք։ Յեվ հետո, պատերազմի դեպքում հո՞ հաստատ բուրժուաներ չե՞ն, վոր մեր դեմ պատերազմելու յեն։



Զին գեղջկուհին իր յերեխաներով

Պատերազմի դաշտ նրանք ուղարկելու յեն իրենց բանվորներին։ Իսկ բանվորները չեն ուզում մեր դեմ կռվել։ Այդ չեն ուզում նույնպես գաղութային ժողովուրդները։

## ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԵՆՔ ՈՒԶՈՒՄ, ԲԱՅՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՊԱՏՐԱՍՏ ԵՆՔ

Մեր կառավարությունը հայտարարում է, վոր ինքը պատրաստ է հաշտությամբ վորոշելու բոլոր վիճելի հարցերը, յեթե այդպիսիները կան։ Մեզ խաղաղություն է հարկավոր՝ մեր յերկիրը սոցիալիզմի ճանապարհով տանելու համար։

Սակայն, յեթե մեկն ու մեկը մեր թշնամիներից խանգարեց մեր յերկրի շինարարությունը, բանվորները յեվ գյուղացիները պատրաստ են զենքը ձեռքներին պաշտպանել իրենց սոցիալիստական յերկիրը։ Բանվորները յեվ գյուղացիները պիտի կրկնապատկեն իրենց յեռանդը, պիտի զարկ տան յերկրի ռազմականացման յեվ պաշտպանության ուժեղացման գործին։ Միշտ պետք է հիշեն, վոր իրենք շրջապատված են թշնամիներով։

## ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Պատրաստ պիտի լինեն նաեվ մեր յերկրի ապագա գիտակից յեվ առողջ քաղաքացիները—պիոներները։

Մխալվում են այն պիոներները, վորոնք ասում են.

— Յեթե ապագան մեզ է պատկանում, մեր ի՞նչ բանն է «մեծերի գործերի» մեջ խառնվել։

Ապագայում աշխատելու համար, հարկավոր է հիմիկվանից սովորել գործի, աշխատանքի մարդ դառնալ։ Միայն գրքերով ուսումը մեզ հարկավոր չի։ Առաջներում, զանազան գիմնազիաներում ու թեմականներում, միայն գրքեր եյին կարդացնում, յեվ, կյանքից կտրված, անպետք ու «ավելորդ մարդիկ» պատրաստում։ Պիոներների ուսումը կապված պետք է լինի կյանքի հետ։

Մեր կյանքը պայքար է, կատաղի դասակարգային պայքար։ Հարկավոր է ըմբռնել այդ պայքարի իմաստը, մասնակցել հասարակական կյանքին։

Այդ տեսակետից է, վոր պիոներները մեծ մասնակցություն պիտի ցույց տան, յերկրի ռազմականացման գործին։ Նրանք պիտի ուսումնասիրեն ռազմական գիտելիքները, մասնակցեն յերկրի պաշտպանությանը նպաստող հասարակական կազմակերպությունների (ՊԱՔԸ—Ավիաքիմ) աշխատանքներին։

Յերբ բանվոր դասակարգը, նրա կոմունիստական կուսակցությունը կարիք ունենա պիոներներին, ԽՍՀՄ յերկու միլիոնից ավելի պիոներական բանակը, պետք է արդարացնի իր վրա դրված հույսերը, պիտի արդարացնի այն դեվիզը, վոր գրված է իր կարմիր դրոշակների վրա.—**Բանվոր դասակարգի պայքարում մի՛շտ պատրաստ։**



# ԻՆՉՊԵ՞Ս ԽՆԱՄԵԼ ՅԵՎ ԿԵՐԱԿՐԵԼ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻՆ

Կենդանու կյանքը և առողջությունը կախված է սննդից և խընամքից։ Որքան կենդանուն լավ կերակրենք և խնամենք, այնքան նրա տված ոգուտը մեծ կը լինի։ Յեվ իզուր չէ, վոր գյուղացիներն ասում են «ինչպես կերակրես այնպես էլ կը կթես»։

Գյուղի պիոներական կոլեկտիվները, վորոնց աշխատանքները սերտորեն կապված են գյուղի կյանքի, գյուղատնտեսության հետ, պետք է ծանոթանան կենդանիներին խնամելու, կերակրելու նոր ձևերին և տարածեն այն իրենց ծնողների տնտեսություններում և ամբողջ գյուղում։

### ԻՆՉՊԵ՞Ս ԽՆԱՄԵԼ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻՆ

ԳՈՄԻ ՋԵՐՄՈՒԹՅՈՒՆԸ.—Մեր գյուղացիները, կովերին, վոչխարներին և մյուս ընտանի կենդանիներին վոչ միայն վատ են կերակրում, այլև չափազանց վատ են խնամում։ Ձմրանն այդ կենդանիները ցրտից մրսում, հիվանդանում են, ուտում են մեծ քանակությամբ կեր, և տալիս շատ քիչ կաթ։

Բացի այդ, չեն չաղանում, այլ լղարում, հյուծվում են։ Ցուրտ գոմն ավելի մեծ ծախս է պահանջում քան տաք գոմը։ Յեվ վորպեսզի մեր կենդանիները լինեն առողջ, ու նրանցից ոգուտ ստանանք և վոչ թե վնաս, հարկավոր է անպայման գոմը տաք պահել։ Տաքությունը կախված է գլխավորապես գոմից, յեթե գոմի պատերը, առաստաղը ունեն քանդվածքներ, ճեղքեր, պետք է ծածկել դրանք և ցեխով կամ կավով սվաղել։ Նախ քան ցրտերըն ընկնելը անհրաժեշտ է գոմի կտուրը հող լցնել և ամրացնել։ Պատուհանները չպետք է ծածկել և կամ փոքրացնել, ինչպես սովորաբար մեզ մոտ անում են, այլ պետք է անպայման ապակիներ գցել։ Այդ



Շողիկը սիրում և խնամում է հորթուկին

բոլորն ամեն մի պիոներ իր ընտանիքում կարող է կատարել, իսկ յեթե աշխատանքներն ավելի ծանր են, նրան պետք է ոգնեն ողակը, կոլեկտիվը։

ԳՈՄԻ ԼՈՒՅՍԸ.—Գոմը պետք է բավականաչափ լուսավորված լինի։ Հաշված է, վոր հատակի ամեն մի 15–16 արշին տարածության, անհրաժեշտ է մեկ պատուհան՝ մեկ արշին մակերևույթով։ Գոմի պատուհանները պետք է պատրաստել բարձր և այնպես, վոր լույսն ուղղակի կենդանիների դեմքին չընկնի, վորից նրանք նեղվում են, անհանգստանում։

Մութ գոմում կենդանիներն իրենց տխուր և վատ են զգում։ Մութ գոմը հնարավոր չի մաքրել և կեղտոտ է լինում, և վորը գլխավորն է, դժվար է լինում հետևել կենդանիների առողջությանը, նրանց սննդին։

Լուսավոր գոմն ավելացնում է կովի կաթը։ Միայն լուսավոր գոմում հնարավոր է մաքրություն պահպանել։

ԳՈՄԻ ՈԴԸ.—Գոմի ոդը չպետք է լինի վոչ խոնավ և վոչ էլ փըչացած։ Կենդանիները չափազանց տաք և խեղդված ոդում իրենց վատ են զգում, ցրտի նկատմամբ դառնում են զգայուն և շատ շուտ մրսում են։ Գոմի չափազանց տաքությունից, կեղտոտություններն արագ փտում են, նեխվում, վորից առաջ են գալիս մեծ քանակությամբ բակտերիաներ։ Շատ կաթնատու կովեր, մաքուր ոդի պակասության պատճառով հիվանդանում են թոքախտով։ Պիոներներից շատերը նկատած կլինեն, վոր կոլեկտիվը յերբ հավաքվում է փոքր սենյակում, կարճ ժամանակից հետո դժվար է լինում շընչել։ Վատ ոդում, նույնիսկ լամպը դժվարությամբ է վառվում, ուր մնաց, վոր կենդանիները կարողանան ապրել։ Մաքուր և թարմ

ողի շնորհիվ, կովը անվում է կանոնավոր և իր կիթը բարձրացնում է։

Յեթե գոմը հատուկ պատրաստված օդանցքներ չունի, պետք է առնվազն օրական մեկ յերկու անգամ թեկուզ կարճ ժամանակով բաց անել պատուհանները։ Դա դժվար չե, ամեն մի պիոներ կարող է և պետք է վոր կատարի։



Իշուկը լալիս եր, վորովհետև նրան Պետիկը միշտ ծեծում եր

ԳՈՄԻ ՅԵՎ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԱՔՐՈՒԹՅՈՒՆԸ.—Գոմի օդի մաքրությունը, կենդանիների առողջությունը կախված են գլխավորապես գոմի մաքրությունից։ Այս խնդրի վրա մեր գյուղացիները համարյա ուշադրություն չեն դարձնում, մաքրում են գոմըն օրական մեկ անգամ, այնել շատ վատ, իսկ կենդանիների մաքրության մասին չեն էլ մտածում։ Գոմաղբը հավաքում են գոմի մի անկյունում և թողնում յերկար ժամանակ, վորից առաջանում է գարշահոտություն, փչանում է գոմի օդը, և վնասվում է կենդանիների առողջությունը։

Անհրաժեշտ է գոմը պահել մաքուր։ Հատակը, պատերը, առաստաղը, պատուհանները, մսուրները պետք է հաճախ լավ մաքրել, սրբել։

Կենդանիների տակը պետք է փռել չոր ծղոտ, խոնավ ցամքարը (խուշկին) մրսեցնում, հիվանդացնում է կենդանուն։ Առանց ցամքարի կենդանին մաքուր մնալ չի կարող։

Ամեն օր խոզանակով և շորով պետք է մաքրել կովերին, մանավանդ կթելուց առաջ։ Կովկիթը, կթողի ձեռները պետք է լինեն մաքուր։ Նախքան կթելը հարկավոր է մաքրել կովի պոչը և կապել վոտին։

Ամեն մի ընտանիքում, այդ բոլոր միջոցների գործադրողը պետք է լինի պիոները, ունենալով այն համոզմունքը, վոր դրանով վոչ միայն կբարձրացնի իր ընտանիքի տնտեսությունը, այլ կը նպաստի գյուղատնտեսության նոր ձևերի տարածմանը գյուղում։ Բացի դրանից կբարձրացնի պիոներական կազմակերպության հեղինակությունը գյուղացիության մեջ։

## ԻՆՉՊԵ՞Ս ԿԵՐԱԿՐԵԼ ԿԱԹՆԱՏՈՒ ԿՈՎԻՆ

Պակաս կարևոր նշանակություն չունի նաև կենդանիների սնունդը։ Մեզ մոտ շատ քիչ գյուղացի կպատահի, վորը գիտենա, թե իր կովին օրական կամ ամսական վորքա՞ն կեր է տալիս և փոխարեն վորքա՞ն կաթ է ստանում։ Այդ չեն կարող իմանալ, վորովհետև կովին տված կերը չեն կշռում, ստացած կաթը չեն չափում, չեն գրում։ Այսպիսով, յեթե ցանկանում ենք իմանալ, թե կովը ինչքա՞ն ծախս է նստում մեզ վրա, պետք է տված կերը կշռենք, ստացած կաթը չափենք։

ԻՆՉՊԵ՞Ս ՉԱՓԵՆՔ ԿԵՐԸ.—Ամենից լավ է ամեն օր, ամեն մի կովի կերը կշռել։ Բայց վորովհետև ամեն մի ընտանիք չունի կշեռք, դրա համար կարելի յե մի խուրձ խոտ կշռել, չափն իմանալ, և այնուհետև մոտավորապես ըստ այդ չափի հաշվել, թե օրական վորքա՞ն խոտ է տալիս կովին։ Յեթե, բացի խոտից տալիս ենք կովին դարման, բազուկ, բամբակի հունտ, կարտոֆիլ կամ ալյուրի թեփ, պետք է վերցնել մի աման, յուրաքանչյուր կեր քիչ չափով այդ ամանով կշռել, և հետո, տված կերըն ըստ այդ չափի ամեն օր կշռել և հաշվել։ Տված կերը տեղական գներով հաշվելով, կարող ենք ամսի վերջն իմանալ, թե կովը ամսական վորքա՞ն կեր է ուտում և այդ կերն ինչ արժե։

ՀԱՇՎԵԼ ԹԵ ԻՆՉՔԱ՞Ն ԿԱԹ Ե ՏԱԼԻՍ ԿՈՎԸ.—Բավական չե կերը հաշվել, հարկավոր է նաև կաթը չափել։ Չափել կարելի յե այնպիսի ամաններով, վորոնց միջի կաթի քաշը նախորոք կշեռքի միջոցով վորոշված է։ Յեթե ամեն օր դժվար է կաթի քանակը վորոշել, կարելի յե ամսին յերեք անգամ չափել։ Յենթադրենք ցանկանում ենք աշխատանքն սկսել մարտի 1-ից։ Այդ օրը կաթը չափում ենք և գրում, օրինակ՝ 12 ֆունտ։ Յերկրորդ անգամ չափում ենք մարտի 11-ին, յեղավ 15 ֆ.



Մի օր էլ իշուկը «ապստամբվեց»

յերրորդ անգամ ամսի 21-ին, յենթադրենք յեղավ 14 ֆունտ։ Ամսի վերջը հաշվում ենք.

ամ 1- 10—12 ֆ. ընդ. 12 որ 12 ֆ.
» 11 20—15 » » 10 » 150 »
» 21 31—14 » » 11 » 154 »

Ընդամենը 31 որ 424 ֆ.

Հաշված փթերով կը լինի 10 փութ 24 ֆ.։ Հաշվելով մի ամսում կովի տված կաթը և նույն ամսում նրա կերած կերը, կարող ենք ասել, թե մեր կովն օգուտ է տալիս թե վնաս։ Անշուշտ այդ չափումները ճիշտ չեն կարող լինել, բայց մոտավորապես կը պարզվի, թե տվյալ կովը ձեռնատու է պահել թե վոչ։

ՎՈ՞Ր ԿԵՐԻՑ, ՎՈՐՔԱ՞Ն ՊԵՏՔ Է ՏԱԼ.—Այժմ պարզենք, թե կովին վո՞ր կերից, վորքա՞ն պետք է տալ։ Յենթադրենք ունենք խոտ, դարման, բազուկ, կարտոֆիլ, բամբակի հունտ, քուսպ, թեփ և այլն։

Այդ կերերից խոտը, դարմանը, մեծ մասամբ գնում են կենդանու կյանքը պահպանելու համար, դրա համար նրանց անվանում են կենսապահ կեր, իսկ մյուս կերերն ազդում են կովի կաթնատվության վրա։ Բազմաթիվ փորձերը ցույց են տվել, վոր յեթե կովին տանք 3 ֆունտ խոտ, նույն նշանակությունն ունի և արժեքը, ինչ վոր 8—10 ֆ. բազուկը կամ 3—4 ֆ. կարտոֆիլը և կամ $1^1/_2$ ֆունտ քուսպը։ Այս նկատի ունենալով, կովին կերակրելիս պետք է հաշվել, վո՞րքան, վո՞ր կերից պետք է տալ, վոր կովը չչաղի և կաթն ավելացնի։ Գործնական աշխատանքի ընթացքում, ամեն մի պիոներ կը նկատի, թե այս կամ այն կերն ինչ առավելություն ունի և ինչպես է ազդում կենդանու վրա։ Մի բան էլ չպետք է մոռանալ, վոր կերը կարելի յե փոխել վոչ մի անգամից. այլ աստիճանաբար։ Այս բոլորից հետո պետք է հետևել, վոր կենդանու կերը թարմ ու մաքուր լինի։ Բայց դա էլ բավական չի, կան կերեր, վորոնք թեպետ մաքուր են և թունավոր չեն, բայց կենդանու փորն ուռեցնում են, օր. յերեքնուկը, մանավանդ անձրևից հետո, յերբ կենդանին սկսում է ագահաբար ուտել։ Կարտոֆիլը, բազուկը և ուրիշ արմատապտուղները, յերբ տալիս եք կենդանիներին, պետք է մանրել, այլապես կարող են կոկորդին դեմ առնել և կենդանուն շնչասպառ անել։

Ս. ՄԱՏՈՅԱՆ

---

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՌԺՈՂԿՈՄ ԸՆԿ. ՍԵՄԱՇԿՈՅԻ ՆԱՄԱԿԸ

**Յերևանի «ընկ. Սեմաշկոյի անվան» կոլլեկտիվին**



Ընկ. Սեմաշկո

*Թանկագին յերեխաներ!*

*Մեծ ուրախությամբ պատասխանում եմ ձեր նամակին, վորի մեջ պատմում եք ձեր կոլլեկտիվի աշխատանքների մասին։ Զգում եմ, վոր Հայաստանի «պիոներիան» քայլում է Խորհրդային Հանրապետությունների Միության՝ մեզ փոխարինողների լավագույն կազմակերպությունների հետ միասին։*

*Հետագայում էլ կատարեցեք Իլյիչի պատգամները, սովորեցեք ճանաչել բնությունը, դաստիարակեցեք ձեզ՝ ապագա կոմմունարներ, նոր կյանքի իսկական կառուցողներ դառնալու համար։*

*Ուղարկում եմ իմ կենսագրությունը, վորը համեմատաբար ավելի լրիվ է գրված։*

*Ի սրտե ցանկանում եմ ձեզ լի առողջություն յեվ հաջողություն՝ ձեր պարապմունքներին։*

Ձեր՝ ՍԵՄԱՇԿՈ

*26/II 27 թ.*
*Մոսկվա*

---

# ՄԻՇՏ ԱՌՈՂՋ, ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ



# ԱՊՐԵՔ, ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր, ԱՊՐԵՔ

1

Պարզ ու աստղազարդ յերկինքից, լուսինն իր կլոր մակերեսով լուսավորում եր Լենինականը։

Աշխատավոր ժողովուրդը, իր առորյա աշխատանքից հետո դուրս եր յեկել փողոց զբոսնելու, թարմ օդ ծծելու համար։

«Գեղացոց մայլեցեն» մինչև «Թուրքերի մայլեն», բերդից մինչև կայարանը, ուրախություն ու ծիծաղ եր տարածված։ Ծիծաղում եյին բոլորը, թե մեծը, թե փոքրը։

Ամեն կողմից լսվում եյին պիոներների յերգերը—

Խարույկով խարկվեք,
գիշերներ կապույտ,
մենք պիոներներ ենք
բանվորների սերունդ։

կամ

Կոմունիզմի հույսն ենք մենք,
Նոր կարգերի լույսն ենք մենք...

Դըրդոց... գոռգոռոց... վռռնոց... աղաղակ... ճիչ... ստորյերկրյա տարօրինակ ձայներ... աղերսանք... փս խուսս...

Ամենուրեք կյանքը փոխվեց..

Բոլորն իրենց գլուխներն ազատելու համար, փլչող տների ու պարիսպների տակից վազում են բաց տեղ, հրապարակ, այգի։

Ամբողջ քաղաքը պատել եր յերկրաշարժի փոշին։ Մի քայլի վրա վոչինչ չեր յերևում։

Մայրերն ու հայրերն աշխատում եյին տներից փախցնել իրենց յերեխաներին։

Կարապետի ընտանիքը բաղկացած եր ութը շնչից։ Ամենամեծ վորդին, պիոներ Վազգենը 15 տարեկան եր։

Նա, տանը նստած, սովորում եր պիոներական օրենքներն ու սովորությունները։

Ստորյերկրյա գոռոցը լսելուն պես, մայրը, ծծկեր յերեխային գրկած, դուրս փախավ։

Վեր թռավ Վազգենը տեղից, և հիշելով վոր «պիոները տոկուն և յեվ համառ», առանց շփոթվելու նետվեց դեպի մահճակալը և յերկու փոքրիկ յեղբայրներին գրկելով՝ դուրս վազեց։ Դուրս գալուպես փլվեց սենյակի յետևի պատը։

Մի վայրկյան հետո, նա նորից ներս վազեց ու 10 և 12 տարեկան քույրերի ձեռքերից բռնած՝ դուրս թռավ տնից։ Մի վայրկյան հետո իջավ տան առաստաղը։

— Վա՜յ... հողը՛ գլխիս, Շողիկս, Շողիկս ներս մնաց,—լալագին ասում եր մի մայր, իր փոքրիկ յերեխայի համար։

Հիմա,— ասաց Վազգենը և ներս վազեց դիմացի աղքատիկ տնակը, ուր յերեխան դարձնել և ճչում եր։ Գրկեց յերեխային և դուրս պետք է փախչեր, յերբ առաստաղը ճռճռաց։ Վազգենն յերեխայի հետ մտավ սեղանի տակը։ Առաստաղը, հողի հաստ շերտով, իջավ...։

... Մի քանի վայրկյան հետո գոռգոռոցն ու աղաղակը մեղմացավ։

Սուրենը մոտեցավ ինձ և կանչեց.

— Ա՜, շուտ արա յեկ այստեղ, Հայկանուշ մորաքույրենց տան փլվածքների տակից ինչ վոր ձայն է գալիս...

Մենք ձեռքերով սկսեցինք յետ տալ հողը։

— Ազատվեցինք.— լսվեց փլվածքի տակից։

— Ա... Վազգենն է, լսու՞մ ես։

Մեզ օգնեցին ուրիշները, գլխավորապես մեծահասակ պիոներները և մենք մի քանի րոպեից հետո դուրս հանեցինք Վազգենին և Շողիկին։

Յերկուսն ել ժպտում եյին։

3.

Այժմ մի քանի թաղեր հավաքված են Նրբանցքների և փողոցների արանքում գտնվող մի փոքրիկ հրապարակում։

— Ապրի Վազգենը, թե նա չեր լինի, բոլորս կորած եյինք,—պատմում եր Վազգենի մայրը։

— Սուրենս եկ ինձ փրկեց, — վրա բերեց մի ուրիշ մայր, — թե ինձ դռան մեջ չեր պահի, տան ճակատի քարերը գլխներիս կիջներ։

Վազգենի հայրը մյուս տղամարդկանց հետ տուն հասավ։ Այդ հերոսությունները լսելուց հետո, նա գրկեց Վազգենին ու ճակատը համբուրեց։

Նրա օրինակին հետևեցին նաև մյուս հայրերը։

— Ապրեք և զորացեք։ Ձեր կերած հացը հալալ լինի։ Ձեր կյանքն յերջանիկ անցնի։ Սկըսած գործներդ հաջողությամբ մինչև վերջը տանեք։ Միշտ խեղճին ու նեղյալին՝ օգնող յեղեք։ Միշտ «ծարավին ջուր տվեք»։

— Ապրեք, պիոներներ, ապրեք։

**Օլեք — Բասս**

Յերևան

---

# „ՄԱՅԹԵՐԻ ԱՂՋԻԿԸ“

Անձրևային օր եր...

Անձրևի կաթիլներն արտասուքի պես գլորվում եյին լուսամուտի ապակիների վրայից։ Կարծես ամբողջ բնությունը լալիս ու հեծեծում եր։

Հանկարծ լսեցի ծանոթ մի ձայն. դուրս յեկա պատշգամբ և տեսա «Մայթերի աղջկան». այդպես եյի անվանել յես նրան։ Նրա հետ եր մի հասակավոր մարդ, վորը շվի յեր նվագում, իսկ փոքրիկը պարում եր։ Նրա պատառոտված շորերը թրջվել եյին և անձրևի ջուրը կաթկաթում եր շորերի ծայրերից։

Յերկար, շատ յերկար պարեց նա Վոչ մի ժամանակ պարը չեր կարողացել այդքան վիշտ արտահայտել, վորքան այդ աղջկա մերթ դանդաղ, մեր ջղայնորեն արագ շարժումների մեջ։

Աղջիկն հանկարծ կանգ առավ և իր աղերսող հայացքը գձեց նվագողի յերեսին, վոր մի քիչ հանգստանա։ Բայց նվագողն անողոք եր, նա շարունակում եր նվագել և աղջկան ստիպում պարել։

«Մայթերի աղջիկ»-ն սկսեց պարել, նրա թևերը հոգնել եյին և հազիվ եյին շարժվում։

Վերջապես նվագը լռեց, աղջիկը թևերն իջեցրեց ենստեց խոնավ քարի վրա։ Նրա թախծոտ հայացքն ուղղվեց դեպի հեռուն, իսկ թուլացած ձեռքերն ընկան ծնկների վրա։ Մեծը՝ ագահությամբ հավաքում եր փողերը։

Իսկ աղջիկը հոգնածությունից ամեն ինչ մոռացել եր։

Յես մտածում եյի, թե ինչ է լինելու «Մայթերի աղջկա» վերջը։

---

1925 թիվն եր... Դարձյալ աշուն... բայց տաք ու կարմիր։ Պայծառ յերկնքից փայլում եր ծիծաղկոտ արևը և կարծես վողջունում Մեծ Հոկտեմբերը։

Հեռվից լսվում եր պիոներական նվագախմբի վոգևորիչ քայլերգը. պիոներների ուռանկը և գիլ յերգերը միախառնվելով թնդացնում եյին օդը։

Յես արագ-արագ անցա գլխավոր փողոցով՝ տեսնելու այդ կարմիր յերթը։ Կոլեկտիվները մեկը մյուսի յետևից, իրենց դրոշակներով ու թմբուկներով անցնում եյին խրոխտ ու համահավասար քայլերով։ Յեկավ և մանկատան կոլեկտիվը. յես նայում եյի նրան, յերբ հանկարծ նկատեցի շարքերում իմ «Մայթերի աղջկան»-ը։

Նրա վոխտ ու գունատ դեմքը պայծառացել եր ու շառագունել, նա կայտառ եր և ուրախ, սևորակ աչքերն աշխույժ հայացքով նայում եյին շուրջը, նա փրկված եր։

Կարմիր Հոկտեմբերը հասել եր, փրկել նրան և նրա նման շատ ու շատ «Մայթերի աղջիկներին»։

Պատկեր՝ **Սեվակ**

Թիֆլիս

---

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

**Ս. Ի. ԼԵՇՉԻՆՍԿԱՅԱ — «Ստեփան Խալթուրին»**

Եջ՝ 30, գինը՝ 10 կոպ.։ Պետական հրատարակչություն։

Ամեն մի պիոներ, անպայմանորեն պետք է ծանոթանա իր հեղափոխական նախնիների կյանքին ու գործունեյությանը։

Գրքում գեղեցիկ ու գեղարվեստորեն նկարագրված է Խալտուրինի հեղափոխական գործունեյությունը, — նրա պատրաստած մահափորձը ցար Ալեքսանդր Յերկրորդի դեմ, ցարական ժանդարմ Սուդեյկինի (?) սպանող ժելվակովին փախուստի մեջ օգնելը, բանտարկությունը, բանտի զրկանքներն ու տանջանքները և ապա՝ կախաղան բարձրանալը։

Ամեն մի պիոներ, մոքով կը ծափահարի Խալտուրինին, և ամեն մի պիոների սրտում ավելի կամրանա հեղափոխական թափն ու վոգևորությունը։

Պետք է կարդալ ու տարածել «Ստեփան Խալտուրին» գրքույկը։ Այս՝ «Պիոների գրադարան»-ի առաջին գրքույկն է։

**Կ. Միճ.**

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ

## ՊԻՈՆԵՐՆԵՐ, ՁԵՌՔ ՄԵԿՆԵՑԵՔ ԱՄԵՐԿՈՄԻ ՄԱՆԿԱՏՆԵՐԻ ՍԱՆԵՐԻՆ

Լենինականում յեղած ժամանակ, գնացի «Պոլիգոն», վորտեղ տեղավորված են ամերկոմի մանկատները։ Յերկու ընկերներ ինձ առաջնորդեցին իրենց ակումբը։ Ակումբը կոչվում է ընկ. Ալ. Մարտունու անունով։

Այնտեղ, պատի վրա փակցված եյին 24 մանկատների պատի լրագրերը։ Այդ լրագրերը թե իրենց նկարներով և թե մաքրությամբ յետ չեն մնում պիոներական պատի լրագրերից։

Ակումբի աշխատանքները հենց իրենք, սաներն են կազմակերպում։

Մեր պիոներները ձեռք պիտի մեկնեն մանկատներում բնակվող իրենց ընկերներին։ Պիոներները կապ պիտի պահպանեն նրանց հետ։

Ի. Բաղդասարյան

Սանահին

## ՄԵԿ ԱՄՍՈՒՄ ՀԻՆԳ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Վերջերս, մի քանի պիոներական կոլլեկտիվներ, ներկայացումով շատ են տարվել։

Որ. Ղուլալի գյուղի կոլլեկտիվը, մեկ ամսում հինգ ներկայացում է տվել։ Իմ կարծիքով, շատ սխալ կլինի, վոր կոլլեկտիվը մեկ ամսում այդքան ներկայացում տա։ Ամենից առաջ այն պատճառով, վոր դրանով տուժում են կոլլեկտիվի աշխատանքները։ Կոլլեկտիվը վոչինչ չի անում, մի գլուխ ներկայացում է տալիս։ Այսպիսով պիոները չի իմանում դաս սովորի, հաց ուտի, կոլլեկտիվի մյուս աշխատանքները տանի, թե՞ փորձերին գնա ժամանակին։

Այս դրությանը հարկավոր է վերջ տալ։

Ս. Բաբայան



Պիոներները խաղում են

## ՄԵՐ ԱՌԱՋԻՆ ՓՈՐՁԸ

### ԻՆՉՊԵ՞Ս ԵՆՔ ԿԱՊ ՀԱՍՏԱՏՈՒՄ ԾՆՈՂՆԵՐԻ ՀԵՏ

«Արարատ» կոլլեկտիվի III-րդ ողակը, ծնողների հետ կապն ուժեղացնելու համար, վորոշել է ողակի հավաքույթներն յերբեմն անել պիոներների տներում։ Մեր առաջին փորձը բավականին լավ անցավ։ Ողակն ամբողջ կազմով այցելեց պիոներներից մեկի տունը, հավաքույթն այնտեղ անցկացնելու համար։ Պիոների ծնողը մեզ բավականին լավ ընդունեց։ Մեր հավաքույթի նյութն եր« Մեր յեղբայրներն ամբողջ աշխարհում»։ Պիոներները գիրքը մեկիկ-մեկիկ կարդում եյին և կարդացածը բացատրում։ Հերթը հասավ ծնողին։ Նա ել կարդաց և բացատրեց։ Զրույցից հետո խաղացինք ու յերգեցինք, և այսպես մեր հավաքույթը վերջացավ։ Ծնողը շատ գոհ մնաց մեզանից։ Ողակը խոսք տըվեց ավելի ուժեղացնել պիոներների և ծնողների կապը։

Գ. Աբաջանյան



Գրում են պատի լրագիրը

# ՄԵՐ ԿՅԱՆՔԸ



Զրույցի ժամանակ

## ԻՆՉ ԱՍԱՑԻՆ ԾՆՈՂՆԵՐԸ

Հաջի-Ղարա գյուղի պիոներական կոլլեկտիվը գումարեց ծնողների հավաքույթ։

Կոլվարը պատմեց ծնողներին պիոներական կազմակերպության նպատակների, մեր կոլլեկտիվի տարած աշխատանքների մասին։ Ցեղան նաև ուրիշ խոսողներ։

Հետո, ծնողներն իրենց կողմից մի բանաձև առաջարկեցին, վորի մեջ ասված է.—խոսք ենք տալիս մեր յերեխաներին ուղարկել պիոներական կազմակերպության մեջ դաստիարակվելու, մեր յերկրին պիտանի մարդ դառնալու համար։

Հավաքույթից հետո բեմադրեցինք յերկու պիես. 1. Պապի կըճուճը և 2. Սերունդների շարան։

Ծնողները մեծ վոգևորությամբ ցրվեցին իրենց տները։

Ս. Միկինյան

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԱՅԻՆՆԵՐԻ ԶՈՐԱՆՈՑՆԵՐՈՒՄ

**Ուսումնասիրեցինք կարմիր բանակայինների կյանքը**

Վերջերս, «Կարմիր կաշեգործ» կոլլեկտիվը գնաց կարմիր բանակայինների կյանքն ու աշխատանքն ուսումնասիրելու։ Մեր ուսումնասիրությունը շատ լավ անցավ։ Մենք յեղանք I և II վաշտերում։ Առաջին վաշտի հերթապահը մեզ ծանոթացրեց այն դաշտի հետ, վորտեղ նրանք իրենց փորձնական կրակները են ունենում, ցույց տըվեց, թե ինչպես են գիրքերը պատրաստում, ինչպես կռվում և այլն։ Ցույց տվեցին նաև գրադարան-ընթերցարանը, ռազմական ռազմածովային անկյունները, և բացատրեցին նրանց նշանակությունը։ Հետո ծանոթացանք կարմիր բանակայինների կյանքին և ապրուստին։ Զորանոցները զարդարված եյին դիագրամաներով, մեծ հեղափոխականների նկարներով։

Այդ բոլորին ծանոթանալուց հետո, պիոներները կարմ. բանակայինների հետ պար բռնեցին և յերգեցին։ Հետո, մեր պիոներները, ի պատիվ Կարմիր բանակի, մի քանի լոզունգներ բաց թողեցին։ Մեր կոլլեկտիվը խոստացավ պատի լըրագրի №-ից մեկն ուղարկել կարմիր բանակայիններին՝ վորպես նըվեր։

Զորանոցից դուրս յեկանք ուրախ տրամադրությամբ, վերադարձանք պիոներատուն և ցրվեցինք։

Վ. Ցեզիզարյան

Յերևան



Քիմիայի դասի ժամանակ

# Ի՞ՆՉ ՊԵՏՔ Է ԿԱՐԴԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

### Պ. ՕՐԼՈՎԵՑ—«Ճամբորդություն այերոպլանով»

*Թարգմ. Ամեռի։ Եջ՝ 32։ Գինը 22 կոպ.։ ԽՍՀՄ ժողովուրդների կենտրոնական հրատարակչություն։*

*Այս գրքում հեղինակն ընթերցողին նախ ծանոթացնում է օդապարիկի գյուտի հետ, ապա ինչպես է մարդկանց հաջողվում այդ օդապարիկը հետզհետե կատարելագործել և դարձնել մեր այսօրվա այերոպլանը։ Յեվ հետո տալիս է այերոպլանով ճանապարհորդողի հետաքրքիր տպավորությունները։*

*Ճամբորդում են Իվան Նիկոլաեվիչը և նրա փոքր որդի Վիկտորը, որը նոր է ավարտել I աստիճանի դպրոցի III խումբը։*

*Զափազանց հետաքրքիր է Վիկտորին այդ ճանապարհորդությունը, մանավանդ, որ նա բավական յերկար է—Լենինգրադից մինչև Թուրքեստան և ապա Թիֆլիս։*

*Գրքի հեղինակը շատ գեղեցիկ կերպով է նկարագրել բնության հրաշալիքները՝ դիտված այերոպլանից և յերբ կարդում եք, կարծեք թե ամեն մեկը ձեզանից Վիկտորի փոխարեն նստած է այերոպլանում։*

*Բայց Վիկտորի ճամբորդությունը միշտ այսպես հաճելի և գեղեցիկ չի գնում։ Այերոպլանը պատահում փոթորիկների և կորչում ամպերի ծովի մեջ։ Բոլորը հուսահատվում են։ Ավելի յե հուսահատվում և վախենում փոքրիկ Վիկտորը, բայց շնորհիվ հըմուտ օդաչուին, հնարավոր է լինում օդանավը փրկել կորստից և հանել ամպերից ավելի վեր։*

*Այստեղ արդեն Վիկտորի առաջ բացվում է բոլորովին չտեսնված մի գեղեցկություն։ Վերևում պայծառ արևն է փայլում, իսկ ներքևում մնացել է ամպերի ծովը, որն արևի շողի տակ զմրուխտի, հակինթի և այլ թանգագին քարերի դեզ լինի ասես։*

*Գրքույկը ժամանցի լավ ընկեր կարող է լինել մեր պիոներների համար։*

**Ս. ԳՐԻԳ.**

### Ա. ԿՈՒՊՐԻՆ—«Յերկրի խորքերում»

*Թարգմ. Ամեռի, եջ՝ 18, գինը՝ 15 կոպ.։ ԽՍՀՄ ժողովուրդների կենտրոնական հրատարակչություն։*

*Յերկրի խորքում, օդից ու արևից զրկված, հավիտենական խավարի թագավորության մեջ, լամպի աղոտ լույսի տակ, աշխատում են հանքափորները։*

*Նրանց կյանքը միշտ մահվան ըսպառնիքի տակ է։ Նրանցից քանի՜-քանիսն են մեռել հանքի փլվածքից։*

*12 տարեկան Վայսկան արդեն վեցերորդ ամիսն է, ինչ այնտեղ է աշխատում։ Աշխատանքը ծանր է, անսովոր, բայց ինչ արած, պետք է ապրել։*

*Այսպես աշխատում եյին ու որերն ել անցնում։*

*Մի որ, հանքահորում Վայսկան մի արտասովոր բան տեսավ։ Հանքափոր Մոխրովը փրփրակալած բերանով գետնին ընկած գալարվում եր։ Նա լուսնոտ եր։*

*Իվան ապին Վայսկային կանգնեցրեց Մոխրովի մոտ ու ինքը վազեց օգնողներ բերելու։*

*Նա ուշացավ։*

*Քիչ հետո մի հանքափոր շտապ վազելով, իմաց տվեց որ փախչեն, որովհետև հանքի միջանցքներից մեկը փուլ է յեկել և հանքում մնալը խիստ վտանգավոր եր։*

*Վայսկան մնաց շվարած։ Նա Մոխրովին թողնել գնալ չեր կարող, իսկ ուժերն ել չեյին պատում նրան ել հետը տանել և փրկել վտանգից։ Մըտածեց։ Հնար գտավ։ Մոտեցրեց ածուխի սայլակը, ուժերի գերագանց լարումով տեղավորեց Մոխրովին նըրա մեջ և սկսեց դեպի վերելակն ըշտապել։ Նա ուժասպառ հասավ վերելակին։ Նրան դուրս հանեցին բոլորովին ուշաթափված։—Ահա գրքույկի բովանդակությունը։*

*12 տարեկան Վայսկայի քաջագործությունն անպայման կվոգևորի մեր ամեն մի պիոներին, և դրա համար ել նրանք պետք է կարդան այս գրքույկը, վորտեղ նրանք կը գտնեն նաև բովանդակության համապատասխան գեղեցիկ նկարներ։*

**Ա. Վ.**

### ՖՐ. ՖՈՆՍ—«Մինիստր մեկ ժամով»

*Եջ՝ 24, գինը՝ 18 կոպ.։ ԽՍՀՄ ժողովուրդների կենտրոնական հրատարակչություն։*

*Շատ քչերը ձեզանից սիրտ կանեյին կատարել այն, ինչ, որ արեց վողբերգական մահով մեռած գնացքի մեքենավար Մարտինի վորդի, 15 տարեկան Թովմասը։*

*Յերեք գնացք կը խորտակվեյին, տալով բազմաթիվ զոհեր, յեթե չլիներ նրա սուր միտքն ու անվախությունը։*

*Թովմասը թե ծանոթ եր շոգեկաթսա վարելուն թե կարող եր հեռագրել։*

*Հարկավոր եր հեռագրել և փոխել տալ կայարանապետի կարգադրությունը գնացքների չերթևեկության կարգի մասին և դրանով փրկել յերեք գնացքները խորտակումից։ Բայց ով կհամարձակվեր կայարանապետի վորոշումները խախտել։ Մտածեց Թովմասը և հնար գտավ։*

*Նա իսկույն սկսեց հեռագրել համապատասխան տեղեր, գնացքների չերթևեկի փոփոխության մասին և հեռագրել՝ ճանապարհների մինիստրի անունից։ Ո՞վ կարող եր չհնազանդվել մինիստրի հրամանին։ Հրամաններն իսկույն ի կատար ածվեցին։*

*Ապա հարկավոր եր ցատկել գնացքի բաժանման պատճառով անղեկավար մնացած շոգեկաթսայի վրա, վորը սլանում եր չափազանց արագ՝ և դանդաղեցնելով այն փրկել՝ նաև դեմից յեկող գնացքը։*

*Այդ ել արեց ճարպիկ և անվախ Թովմասը։ Առանց մահից վախենալու, նա ցատկեց շոգեկաթսայի վրա, մեծ դժվարությամբ մահից ազատվելով, և փրկեց նաև դիմացի գնացքը։*

*Այսպիսով նա փրկեց յերեք գնացք և բազմաթիվ կյանքեր՝ խորտակումից։*

*Թող բոլոր պիոներները կարդան այս գիրքը։*

**Վ. ԱՆ.**

# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ!




Ռեբուս № 1




Ռեբուս № 2

## ՄԻ ՀԻՆ ԱՆԵԿԴՈՏԻՑ

«... Սափրիչին բերին տուն և ասացին. այս տանը դու պիտի բնակվես։ Այս տանը քեզ հետ միասին տասը տղամարդուց ավելի չկա։ Մի քանիսը նրանցից, իրենց յերեսներն իրենք են սափրում, մնացածները իրենք իրենց չեն սափրվում։

Յեվ ահա, դու պետք է ամեն որ սափրես բոլոր նրանց, վորոնք իրենք իրենց չեն սափրում։ Իսկ այն տղամարդկանց, վորոնք իրենք իրենց սափրվում են իրավունք չունես սափրելու։ Համաձայն ես։

—Համաձայն եմ,—պատասխանեց սափրիչը,—դրանից ել հեշտ պայման։

—Սպասիր։ Ուշադրությամբ լսիր մեկ անգամ ել։

1) Բոլոր տղամարդկանց առանց բացառության, վորոնք բնակվում են այս տանը և իրենք իրենց չեն սափրում, դու պետք է ամեն որ սափրես։

2) Վոչ մի տղամարդու, վորն այս տանն է բնակվում և ինքն իրեն սափրում է իրավունք չունես սափրելու։

Սափրիչն ընդունեց այդ պայմանները։

Բայց կարո՞ղ եր արդյոք այդ պայմանները կատարել։

### ԽՆԴԻՐ № 1

9 լուցկիներից կազմել 3 քառանկյունիներ։

### ԽՆԴԻՐ № 2

Հինգ լուցկիներից կազմել հինգ թեվանի մեկ աստղ։